այնք որք իմաստուն արուեստին գործիք եղեն, 'ի ձեռն մարթուչ արանց՝ այնպ ցիկ որք զնոսա տեսանեն՝ է տեսանելի, զի թէպէտ և իմաստուն արուեստագէտն Հեռի իցէ ։ Քանզի յեղելոցն յայտնի գործ ցուցանէ զարարիչն, զի թէպէտ և սա ոչ իցէ մօտ ։ Արդ աՀաւասիկ 'ի պղնձինութեայ երաժշտական արուեստագէտն իմաստուն կազմած արուեստաւոր Հանճարով ժամանակացս զցուցական գործին կատարեալ՝ քաղաքի տայր, որպէս զիարդ ժամանակացն զքանակութիւնս չափովք անջատման բաժանելովք՝ մատուսցէ այնոցիկ, որք կամին զլիութիւնն Հասանելոյն ։ Քանզի բոլորակին արուեստաւոր պարաբերութիւն զերկոտասանաժամեայ տիւն՝ քանոնեցելովք մեկուսութեանցն ածէր ։

Այլ առ այսոքիւք և զայն ևս մանաւանդ պարտ է զարմանալ, յորժամ զանշունչ նիւթ զանազան ձևովք կերպագործեալ՝ Հնչաւոր ձայն սմա տայ՝ ազգի ազգի կենդանեաց յիմաստուն արուեստէ, և ձայն Հնչաւոր կենդանեացս առեալ գործոյն ։ Արուեստաւոր զգործն տեսեալք, ոչ ընդ գործեցեալ կազմածս զարմացեալք 'ի բաց գնացին, անշունչ նիւթ զսա գիտացեալ գոլ՝ ոչ ինքնին ընդերգործութիւնս ունելով. իսկ զերաժշտական զարուեստագէտն գովելով՝ տեսանել կամեցեալք՝ ամենաբարի գործոյ պատաՀեալք ։

Ո՛չ է այնուՀետև վրիպել, յորժամ նախախնամութիւն գոլ ասեմք զշանթեացն առաքմունս 'ի վերայ՝ բանիւ նախախնամութեան կատարեցելոյ, աշխարՀիս մասանց՝ իմաստուն միօք սպասաւոր եղելոյ, զորէն նիւթոյ՝ արարչին Հնանեալք ։ Քանզի ասացաք և զժամանակացն զցուցական գործին՝ յիմաստուն արարչէ արուեստէ սպասաւորական շարժմունս՝ մարդոյն կատարել ։

industrios, elaborata cernuntur, statim haec ipsa videntibus, et si procul artifex sit, esse tamen aliquem aperte patet. Opus siquidem ipsum evidenter demonstrat factorem, quamquam is minime adsit. Ecce ex materia aerea elegans artis peritus artificiosam machinam sollerti ingenio perficiens, instrumentum tempora discriminans dabat civitati, ut temporum quantitatem per mensuras divisionis distributam praestaret iis, qui vellent assequi plenam notitiam ejus rei. Siquidem circuli artificiosus gyrus duodecim horarum diem suggerebat per regulatas distantias [1].

Praeterea illud quoque maxime mirari oportet, quod ars ingeniosa materiam exanimem variis figuris efformans, vocem figuris ipsis indit diversorum animantium, ita ut automa vocem emittat animalium viventium. At qui opus illud artificiosum vident, non ipsam machinam fabricatam mirati abscedunt, quum haud nesciant illam esse materiam exanimem, haud per se habentem actus illos, sed ipsum musicum opificem laudantes, et si opus ejus praeclarum pertractant, illum tamen intueri concupiscunt.

Non ergo decipimur, quum providentiae opus esse dicimus fulminum jactus; ab ea nempe providentia perfectos, cui mundi partes sapienter obsequentur, quemadmodum materia nutui artificis: diximus enim vel ipsum instrumentum temporis indicem ex arte sapientis factoris obsequenter homini motus perficere.

1 Mira descriptio horologii, quam tamen machinam nonnisi Saec. XIV. vel XV. inventam nonnulli arbitrabantur.

Իսկ թէ մարդն, և մասնիկն մասին ամենայն աշխարհիս՝ բանաւոր կենդանի մարդն՝ յատուկ ինքեան առանձնաւորութեամբ, և որ կայ 'ի նմա զօրութիւն՝ միշտ արդիւնական գործս պիտոյից իմաստաւոր խորհրդով գործել, արժան է՝ իբր թէ նախախնամութիւնն աշխարհիս ամենայնի է շունչ, յորմէ և բանաւոր մասունքն զգոյն և զէն զառողկացութիւնն ընկալան, ոչ իւիք գործովք գործականօք՝ 'ի ձեռն նոցունց որ 'ի նմայն կայ՝ գործէ զոր կամի:

Եւ է ո՞չ է կարի համարձակութիւն և յոյժ յանդուգն, հատանել յառաքինի նախախնամութենէն զիմաստուն ձեռնարկածս առ խրատ գործեցելոյ, ուղղել զամենայն կամեցեալ մարդկան զարդ, կամօք զարդարուն բարս 'ի նմա առնել կամեցեալ, ահիւք և պարգևօք, և ուսմամբք 'ի կարգ պատուհրաւիրելով: Որպէս բարւոք դայեկի՝ որդւոյ ամենայն իրօք խնամաբար դարման տանելով, ոչինչ առաւել քան զայն գործելով՝ որ մանկանն 'ի գեղեցկազարդութիւն մատուցանէ. զի թէպէտ և մանուկն նման իցէ մօրն դիմաց՝ զամօթալին 'ի բաց բառնալով. զի թէպէտ և 'ի խեռից է նա, զդարմանն 'ի բաց մերժելով, դայեակն ոչ դադարեսցէ, եւ երբեք և զականջ մանկանն ձգելով, և ե՛ զի տանջելով, և ե՛ երբեք զի բանիւ սպառնալով՝ մարմնոյն զարդ առնուլ. զի թէպէտ և առ 'ի խրատն նա դժուարաբեր իցէ: Վասնզի պարտ է յորդւոց զամօթալի ոսկերսն 'ի ծնողացն ծախել. թէպէտ և ցաւել ոգւոյ թուեսցի, ցաւեսցէ, խրատեսցի և որ սնուցանէ զմանուկն:

Նախախնամութեամբ 'ի վերայ առաքելով կարկտից, շանթից, մարախոց, և զանազան տանջանօք յառաքինութիւն զորդիսն ածելով. քանզի թէպէտ և յանդգամութենէ սոքա խեռիցեն: Վասնզի ոչ էր արժան 'ի նախախնամութենէ թողուլ զմարդիկ իբրու յանխնամութեան:

Quod si homo, rationale animal, idemque pars mundi, et partis pars, potest per se, ac ex virtute sibi indita, semperque officiosa, opera utilia prudenti animo facere; cur Providentia, illa universi mundi anima, a qua rationales etiam partes acceperunt esse et existere, nequeat facere quidquid vult, quin ullis instrumentis utatur, sed intima prorsus virtute sua?

Nonne nimia fiducia, immo extrema audacia est denegare sagaci providentiae sapientem deliberationem operandi ad instructionem, quoties corrigere vult totum hominum genus; intendens ornatos in eo mores efficere, ac per pavorem ac donum disciplinamque ad ordinem decentem invitans? instar nimirum bonae nutricis puero diligentissimam curam adhibentis, nihilque amplius agentis, nisi quod ipsi decorem ferat; nempe ut puer etsi similis sit matri suae, ea quoque auferantur, quae pudori illi esse possunt. Quod si contumax ille reperiatur respuens curas sibi adhibitas, non ideo desistet nutrix, nunc aures puero vellicans, nunc plectens, alias quoque minis perterrefaciens, ut quamvis invitus recipiat honestum corporis habitum. Oportet enim quae in filio velut ossa superflua pudorem afferunt, tolli a parentibus; etsi dolore affici et ipsi videantur: imo licet quandoque doleat ipsa quoque nutrix, atque tristetur.

Itaque providentia immittit grandines, fulmina, locustas, ut variis flagellis ad virtutem filios adducat, etsi isti insipientia ducti contumaces sint: neque enim decet providentiam, relinquere homines velut providentia destitutos. Nam si providentia non esset, nullo dolore

Վասնզի եթէ նախախնամութիւն ոչ էր, ոչ ցաւեցոյց ոգի, ոչ ախտացոյց. իբր այն, ոչ է՝ որ տանջէր։ Այլ եթէ ոչ խրատեսցէ, ոչ գտցէ զառողջութիւն, վասնզի ոչ ունի զխրատօղն։ Իսկ որ անգիտասցէ նախախնամութեան, յախտից ուսցի։ Վասնզի մեռեալ բնութիւն ոչ ցաւէ, յորժամ ոգի ոչ գոյ 'ի նմա։

Աննախախնամութիւն և միայն անօգուտ է, քանզի ոչ աճէ՝ իբր մեռեալ, և ոչ տայ՝ իբր ոչ գոյ։ Իսկ նախախնամութեան առանձինն է զերկոսին տալ. քանզի ծաղկէ իբր կենդանի, բերելով զոր ունին. և տայ իբր խորհելով, և տանջէ բառնալով 'ի բաց։ Վասնզի պատուէ զառաքինութեանն մրցանակ, զարս բերելով զաննախանձ առատութիւն. մրգամ. քանզի խնդայ՝ ընդ առնուն, և տրտմի՝ յորմէ բարձեալ լինի։

Ապա եթէ զնոյն կերպն ոչ տասցէ ըզ-բնութիւնն զայսպիսի միշտ ունել յինքեան, և 'ի նմանէ տալ զոր ունիցն, հարցից զնա այսպիսի ինչ բանիւ. զի եթէ որ առնուն՝ աշխարհի ինչ մասն է, և մասին մասն՝ նախախնամական գոլ երևեալ է, Իբր այն որ զգործեալն մարդկան պարգևս բերէ, ոչ նախախնամական, յորժամ այն որ առնուն, իբր զի 'ի նմանէ՝ նախախնամական գոլ երևեսցի։

Ասասցէ Եպիկուրոս. զոր շարադրութիւնս ինքն արար, 'ի նախախնամութենէ և յիմաստութենէ՞ գրեաց, թէ առանց իմաստութեան։ Զի եթէ առանց նախախնամութեան և իմաստութեան գրեաց, խնդասցէ՞ զի այնք որ 'ի նմանէ ասացան՝ իբր անիմաստք և անխրատելիք են։ Իսկ թէ իմաստուն նախախնամութիւն շարադրեաց, և իբր իմաստուն է այն, որ ոչ յիմաստութենէն է, և կամ նախախնամականք այնք՝ որ ոչ 'ի նախախնամութենէ են։ Վասնզի ոչ իմաստութիւն առանց նախախնամութեան, և ոչ նախախնամութիւն առանց իմաստութեան։

afficeretur animus, neque morbo ullo vexaretur, eo quod nemo esset, qui flagellaret. At si non corripiatur, non acquiret sanitatem mentis; deerit enim ei admonitor. Qui ergo non cognoscit providentiam, cognoscet ex morbis: cum alioquin mortua natura putanda sit, quae non sentit dolorem.

At improvidentia nulli rei apta esse potest, nam quasi mortuum corpus iners est, neque etsi sit, quicquam praestat, sed perinde est ac si non esset. At providentiae proprium est utrumque praestare; siquidem florescit ut viva, afferendo quod habet: dat sicut deliberans, et affligit tollendo. Nam virtutis bravium honestat, praeseferens liberalitatem sine invidia; ita ut congaudeat illi, qui accipit; et ei, a quo aufertur, condoleat.

Quod si quis non hanc esse dixerit ejus naturam, ut haec semper in se habeat, et inde det, unde habet, interrogabo ego eum hoc modo: si qui accipit, cum ipse pars aliqua sit mundi, partisque pars, providus esse videtur, quomodo ille non erit providus, qui creata haec dona hominibus affert; quando vel ipse qui ab illo haec accipit, providus esse cognoscitur?

Dicat mihi Epicurus: quotquot ipse scriptiones edidit, utrum ex providentia sapientiaque scripserit, an sine sapientia? Si enim sine providentia sapientiaque scripsit, an ne sibi gloriae tribuet, quae scripsit hujusmodi esse, ut sapientia, et disciplina destituta esse videantur? Quod si sapienter scripsit, atque prudenter, quomodo sapiens erit, quod non est ex sapientia, aut providum, quod non est ex providentia? Siquidem non (est) sapientia sine providentia, neque providentia sine sapientia.

Ապա եթէ սոքա որպէս սոքա են, խոստովանեսցի նախախնամութիւն՝ որ 'ի նախախնամութենէ է. և ուսուսցէ նախախնամութիւն՝ իբր նախախնամութեան է մասն. քանզի ոչ մասունք առանց բոլորի բաղկանան, և ոչ բոլոր առանց մասանց: Քանզի ո՞ ասասցէ բոլոր առանց մասանց. որոց 'ի բաց բարձեցելոց՝ ոչ է բոլորն: Իսկ ո՞ր անպիտանութիւն և անխնամութիւն, ինքն փութով յառաջ քան զամենայն գործ գիտուն նախախնամեալ: Ապա եթէ գիտութիւն է, և նախախնամական է: Ապա ուրեմն գոյ իմաստութիւն և գիտութիւն, յորմէ և ուսաւ, և է իմաստութիւն իմաստունս վարդապետել: Քանզի ոչ անիմաստ է գիտութիւն: Իսկ եթէ ոչ անիմաստ է, իմաստական է. և եթէ իմաստական է, նախախնամական է. քանզի զգաստութիւն նախախնամութեամբ զամենայն ինչ գործէ: Իսկ վասն այսորիկ դարձեալ ասասցից. Որոյ մասն նախախնամական, հարկ է և բոլորին նախախնամական գոլ: Իսկ որ կամիցին յամենայն բնութենէ զնախախնամութիւնն 'ի բաց հատանել, նախ առաջին զմասանցն նորա զնախախնամութիւն ապատեսցէ. քանզի անուսումն ամենայն ոգի եղիցի՝ յորժամ նախախնամութիւն ոչ գոյ: Քանզի և ոչ զմրջիւն նախահոգական ոք կալցի, և ոչ զմեղու արարչական, և ոչ զծիծառն իմաստուն. քանզի ոչ նախաիմացութեամբ 'ի բնութենէն զայս գիտէ:

Quod si haec ita se habent, fatebitur certe providentiam, qui ex providentia est, et docebit providentiam, quatenus providentiae pars est: quoniam partes sine toto non consistunt, nec totum sine partibus. Quis enim dixerit totum sine partibus; quibus sublatis, non est totum? Quae ergo inutilitas ac improvidentia erit, ubi quisquam ipse ante omne opus comperiatur sapiens ac providus? Si enim scientia est [1], etiam provida est; atqui datur sapientia ac scientia, a qua edoctus fuit: est enim sapientia sapientes edocere; non autem insipiens est scientia. Quod si non est insipiens, sapiens erit; si autem sapiens, provida utique erit: quia pervigil solertia provide omnia agit. Ideoque iterum dicam: Cujus pars provida est, necesse est ut totum quoque providum sit. Qui vero velit ab universa natura tollere providentiam, prius oportet ut partium ejus providentiam irritam reddat: quia indocta erit omnis anima, si non datur providentia; nec formicam quis providam censebit, nec apem ingeniosam, neque hirundinem industria praeditam: non enim praescientia ex natura id novit.

Ապա եթէ պա՛րտ է յանդուգն համարձակագոյն ինչ ասել, դադարեսցէ դատաւոր՝ զանարգանաց դատս 'ի մէջ առնլով. և քաղաքին այցելութիւն մի՛ արասցէ՝ նախախնամութիւն ոչ գիտելով. քանզի ոչ է նախախնամութիւն, զի 'ի նմա ուսցի: Իսկ իբր յորժամ իշխան առաջնորդ 'ի քաղաքի իմաստաբար նա-

Si vero liceat audacius adhuc ac fidenter aliquid dicere, cessabit judex de injuriis quaerere, neque curam geret quisquam civitatis, qui non norit providentiam: quum non detur providentia, a qua haec edoceatur. Quomodo ergo, quando princeps sapienter regens civitatem, providentiam exercet, istius lau-

1 Գիտութիւն passim supponit pro Gr. ἐπιστήμη, aeque accepta ut *scientia*, *peritia*, *ars*, etc.

խախնամութիւն արասցէ, զորս զամենն զիշխանութիւնն՝ իբր իմաստասիրաբար զամենայն ինչ գործեցեալ։ Նաև զմրջիւնն և զմեղու, և թէ դէպ իցէ՝ և զկռունկ, և զայլ ևս զօդագնացս նախահոգականս արարչականս ցուցանեն։ Նաև քաղաքի դատաւոր յորժամ զդատապարտն մահու դատիցի զոք, յորժամ ըստ նմին գործ դայս պահանջէ, ոչ պարսաւեն. իսկ նախախնամութեան շանթից 'ի վերայ առաքմունս և կարկտից տեսանելով 'ի վերայ փայտից և քարանց և ամպարշտաց 'ի վերայ առաքեցեալ, աննախնամութիւն ասեն։

Նաև ոչ կենդանեաց և կամ մահկանացու ազգի մարդկան՝ զհաղորդութիւն նախախնամութեան տալ կամին։ Մեղուագործութիւն յառաջ քան զմեղու՝ յարմարապէս կարգիւն ասացին կատարիլ, և մատակարարապէս և զմրջիւն՝ ունդս 'ի ծակս 'ի ներքս ամբարել. իսկ 'ի նախախնամութեան անգործութիւն ինչ ամենևին թուեն, ոչ տեսանելով՝ ամենեցուն միանգամայն որ յերկրի են՝ զնա ել կենաց պատճառ։

Նաև զի՞նչ աներաժիշտ գործէ նախախնամութիւն՝ ամպարիշտս սակաւս թուով ընդ շանթիւք անկեալ, զի չարքն երկուցեալ՝ զնախախնամութիւն ուսցին. իբր զի 'ի բանական բնութենէն են. զի մի և ծառայից և պատժարանց զօրէն՝ առ անգիտութեան պատժահալածք եղեալք՝ միահամուռ 'ի մահ մատնեսցին, 'ի չարութենէ դադարել ոչ կամեցեալք։ Քանզի ոչինչ՝ զոր է, նախախնամութիւն անտես առնէ։ Նաև մարդասիրութեան ցոյց է՝ և որք 'ի վերայ քարանց և փայտից ընդ ժամանակս ժամանակս լինին շանթիցն արկածք։ Քանզի յաղագս խրատու մատակարարէ նախախնամութիւն՝

dant principatum tamquam omnia prudenter operantis; formicam etiam, ut amplius quid dicam, apem, gruem, caeterosque in aëre volantes providos esse ac solertes probant? Judicem etiam urbis, qui judicio mortis aliquem damnat, quando opus suum id exigit, haud vituperant; Providentiam vero videntes fulmina desuper mittentem grandinesque super ligna, saxa, et impios, improvidentiam appellant?

An nec animalibus, neque mortali hominum generi participationem providentiae volunt tribuere? Mellificium ab ape, [1] apto ordine dixerunt perfici: dispensatoris more formicam noverunt semina inter foramina colligere: et tamen in providentia otium quoddam omnino comminiscuntur, non videntes omnium omnino, quae sunt in terra, eam esse vivendi causam.

Et quid imperite [2] agit providentia, in impios paucos numero fulmine animadvertens, ut mali timore acti providentiam ediscant; quippe qui ex natura sunt rationali: ne servorum more, imo et brutorum, prae inscitia acriter castigati, universim morti tradantur, quum nolint cessare a malitia? Nihil enim est, quod providentia despiciat: et profecto benignitatis est argumentum id quoque, quod super saxa lignaque identidem cadant fulmina; monitionis enim causa ita disponit providentia, nolens penitus delere genus humanum: ac terrorem praebet, suam longanimitatem manifestans

1 Ad verbum, si mendum desit, ita exponitur: *Mellificium ante apem*, vel *ape anterius*: quo dato, fortassis interrogationis nota locum habebit.

2 Աներաժիշտ, veluti digito notat Graecum ἀμούσως, q. d. immusice.

ոչ կատարեալ 'ի բաց բառնալ զխոստացեալ զմարդկան ազգ։ Բայց խրատուիլ ահի տայր զիւր երկայնմտութիւնն յայտնապէս ամպարհաւաճիցն առ արթուն խորհրդականութիւն, յայտնի երեւեցուցանելով 'ի ձեռն այնոցիկ որ կան 'ի նմա 'ի զգալի տարերքն։

Այլ մի երկմտեր ճշմարտասէր առ ասացեալ տեսութեան. որ և 'ի քարանց հուր՝ ոչ քարանց միայն պատճառք առնանց մարդոյ ուրուք լինի, եթէ ոչ ունիցի զայն որ հանիցէն։ Վասնզի պարտ է անշունչ նիւթ բանաւոր կենդանեաց սպասաւոր լինել՝ սարկաւագելով առ նորա կամսն։ Վասնզի որ 'ի նիւթոյ քարանց հուր ցուցանել կամեցեալ, յայնմանէ որ կայ 'ի նմա բնական շարժումն, որ բանիւ տեսանելի է, քարիւ հուր 'ի պիտանի գործս ձգեալ լինի։ Արդ տարերքն կալցին զիւրեանց զբնական հուրն, նախախնամութեանն զշարժումն յենթակայ մարմնոց տալով, որպէս շունչ զզգալի մարմինսն առ յայտնի գործ հրաւիրելով։ Վասնզի աշխարհագոյժ առնէ նախախնամութիւն զանտեսանելի տարերցն հուր յամպարշտաց դատապարտանի ըմբռնեցելոց, քանզի անհնար է 'ի շանթից ըմբռնիլ՝ և արդար. քանզի ընտրութեամբ զամենայն ինչ դատի նախախնամութիւն։

Իսկ պտղոցն ապականութիւն 'ի կարկտէ և յանձրևաց և յայլոց վշտաց աղմկի եղեալ՝ արդարոյն ոչ ցաւեցուցանէ. քանզի ոչ ունի զայն՝ որով զրկեսցէ։ Նա և թէ այս է, ապա ոչ ուրեմն զրկեսցէ զնա։ Վասնզի տրտմեցուցանէ զարդարն և ոչ իւիք, մանաւանդ զայն՝ որ անխռովութեամբ է ամենեւին զարդարեալ. բայց կրթութիւն առցէ սա զեղելումն, անախտութեան բարուց զանբեքելին ունելով։

elatis animo, ac ut vigilantem deliberationem arripiant, evidenter ostendens in visibilibus elementis potentiam suam.

Noli autem dubitare, amator veritatis, de doctrina nuper exposita; quum etiam ex lapide ignis non prodeat, si lapidi aliquis homo non accedat, nec adsit qui eum eliciat. Siquidem debet materia exanimis obsequium praestare animali rationali, hujus voluntati obsequens. Quando enim ex materia lapidis ignem accendere quis vult, ex ipso naturali motu illi insito, qui ratione praeditus est[1], ignis in opera utilia e lapide elicitur. Itaque continent quidem elementa naturalem sibi ignem; at providentia motum praestans, ex subjectis corporibus, ut anima ex corporibus sensibilibus, visibilem effectum producit. Eodem modo per totum mundum dilatabit providentia invisibilem elementorum ignem ad impios judicio obnoxios, quin justus circumdari fulmine debeat[2]; nam cum electione omnia judicat providentia.

Corruptio autem fructuum ex grandine, imbribus, caeterisque calamitatibus obveniens, haud dolore afficit justum; cum enim nihil habeat, quo privetur, non ipsi injuria infertur. Etenim non offendit justum ullo modo, praesertim eum, qui tranquillitate omnino decoratus est: is enim prout assuefactus est, moderate rem accipit[3], animo passione omni carente, minimeque pertur-

1 Vel, ratione cernendus est.

2 Non negare se monstrat Philo justos etiam similia pati, sed instat diverso animo perpeti; ut patebit ex infra dicendis.

3 Aut: pro exercitio, vel probatione accipit.

Ապա եթէ յեղումն արդարն կրէ՝ ստա-ցուածոց 'ի բաց բառնալով, կամ անի-րաւից մահուց 'ի վերայ եկելոց, սա ոչ է արդար։ Վասն զի և վարձուց պա-տուելով զաստուածութիւնն։ Այց հպարտու-թիւն 'ի վերայ ամենեցուն առաքինին (այն) 'ի կիր արկանէ, և ոչ միով օրինա-կաւ ցաւ է ակնկալեալ. այլ և փառաց և գովութեանց, և նորին իսկ բոլորի կենցյ՝ ամբարտաւանութիւն ունի։

Իսկ քան զնախախնամութիւն ո՞ ի-մաստնագոյն է, զի որք 'ի նմանէն եղեն՝ պարսաւեսցէ։ (Ո՞) ոք իմաստունն զբժիշկ յառաջամատոյց օգնականութեամբ վա-րեցեալ՝ արգելուլ զախտ կամեցեալ՝ բամ-բասեսցէ։ Արդ՝ և նախախնամական ա-մենայն աշխարհիս բնութիւն իմաստունն է, 'ի ձեռն անձրևաց և կարկտից՝ ար-դարոց թէպէտ և 'ի բաց հատցէ զբու-սոյն զպտղաբերութիւն, արգելլով զի-տացեալ զայն որ 'ի միւսանգամ յոք լի-նելոց է վնասն, վասն որոյ են սոցա պտո-ղոց առատաբերութիւն։

Ո՞րբ ոչ նախախնամութի՛ իմացեալ և-ղև արարչականքն, այն որ զարարչականն անիրաւութե՛ 'ի պատճառս բաց բառնայ։ Իսկ զի թէպէտ և զայսոսիկ բերիցէ, քան-զի (յաւէժամ) Ճանապարհք ամպարշտաց փոքր յանցուածք լինին։ Իսկ պարտ էր նախախնամութեանն՝ զի իմաստունն է, յառաջորդել օգնականութիւն մատու-ցանել արանց՝ որք արժանաւորութեան վարուք կրթեցան։ Վասնզի մեծ արդա-րոց բերդ է՝ արանց առաքինեաց ոչ սա-կաւ պատճառս անպարապանաց զնա-խախնամութիւնն թողուլ։ Վասնզի յան-դուգն և անգով են առ 'ի վնաս խոր-հուրդք, թէպէտ և արդարոց իցեն։ Արդ

bato. Quod si mutationem animi patiatur justus, vel possessionibus sublatis, vel injusta morte superveniente, jam non est justus; quum donorum, et mercedis gratia divinitatem colat: omniumque superbissimus revera sit hujusmodi justus, qui nullo modo dolores expectat, sed gloriam et laudes, ita ut tota ejus vita superbiam redoleat.

Ecquis providentia ipsa sapientior est, ut vituperet quae ab ea fiunt? Quis sapientum incusabit medicum, qui remediis adhibitis praevenire morbum conetur [1] ? Atqui eodem modo etiam providens universo mundo natura sapientissima est, quamvis immissa pluvia cum justorum etiam detrimento germinum foecunditatem impedit: satis sibi conscia id se impedire, quod ipsa fructuum abundantia, singulis detrimento futura esset.

Quomodo vero providentiam effectricem esse negabimus, cum causam iniquitatis effectricem auferat; cum hoc modo efficiat, ut impiorum minora sint delicta? Etenim oportebat providentiam, quippe quae prudens est, iis qui vitae innocentiam secuti essent, medicinam praestare, quae illos ab animi morbis tutos redderet; quoniam arx magna patet justis, si providentia haud leves exercitationis causas [2] ipsis relinquat: audacia enim consilia, vix laudabilia sunt, imo nociva, etsi a justo profecta. Haud ergo peccat providentia, quando praedicta aufert a justis; solet enim in ae-

1 Huc aspicit illud Ignatii Doctoris Armenii dictum comment. in Luc. c. xv. « Դպիրք և փարիսեցիքն հեղձեալք նախանձու՝ բամբասէին զբժշկին խոնարհութիւն առ ախտացեալս, և զհո-վուին գնալն զհետ կորուսելոյ ոչխարին ||. h.e. » Scribae, et Pharisaei invidia suffocati, accusabant medici humiliationem ad aegrotantes, pastorisque profectionem post ovem perditam «.

2 Անպարապանք aequivocum videtur, ut Gr. ἀσχολία, et Lat. vacatio.

ոչ մեղանչէ նախախնամութիւն, յորժամ զյառաջասացեալսն 'ի բաց բառնայ յարդարոյն, եթէ զի սովոր է արժանապէս պահել զսոցա 'ի բաց բառնալով:

quitate eos servare, haec [1] auferendo.

Բայց անկանի ընդ առաջիկայիւ հարցուածիս և այն ևս՝ որք յոմանց 'ի կախ կան խօսք կրթութեան, որք ասացին. Եթէ երկիւղ արկանէր նախախնամութիւնն մահու արդարոց՝ պատերազմի 'ի վերայ հասելոյ. այլ և նաւաց վրիպել 'ի լայնութեան ծովու՝ արդարոց և անիրաւաց 'ի նմին ժամանակի և 'ի տեղւոջ զոյգ 'ի մահու ընկղմեցելոց: Եւ այլ ևս այսպիսի 'ի վերայ ասեն:

Caeterum in praesentem quaestionem cadit illud etiam, de quo disputant eruditionis gratia nonnulli dicentes. Quomodo mortis pavorem immittit providentia etiam justis praelio imminente? Nec non aberrante navi in vastitate maris, justi ac injusti eodem tempore et loco aeque a morte obruuntur? His et alia similia insuper objiciunt.

Բայց հարցանել զսոսա արժան է, զի՞ արդեօք լիցի ատեան դատաստանի արդարոց և անիրաւաց. քանզի ոչ է դիւրին մարդոյ իմանալ, եթէ զի անյայտք են իւրաքանչիւր բարքն: Ոչ է ոչ զանխմաստն ընդ միտ ածել: Ոչ ընաւ ամենևին հնարանելի զոք չափել և տեսանել զիւրաքանչիւր կեանս վարուց: Բանզի ծածուկ է այն՝ որ առ յոմանց ոչ տեսանելիք եղեալ են անիրաւութիւնք, թէպէտ և նոքա արդարք երևեցին. և թաքչի և ոչինչ՝ միայն 'ի նախախնամութենէ: Ապա եթէ անյայտ մարդկան իւրաքանչիւր ուրուք կեանքն, ոչ է ասել զարդարսն ընդ ամպարշտաս կորուսեալս. քանզի իմաստութեամբ դատաստանի զամենայն գործէ նախախնամութիւն: Բանզի գիտեմք մեք և ոչինչ՝ ո՞ արդեօք լինիցի ամպարիշտ, կամ արդար. բայց նախախնամութիւն կալցի գիտութեան զղղեակն, ստուգել զիւրաքանչիւր ուրուք վարսն ոչ անգիտացեալ: Իսկ եթէ այս որպէս այս է, ոչ իւիք պարսաւեսցէ ոք զնախախնամութիւն, եթէ յանհատութենէ եղելոյ կատարուած. որպէս թէ իւրաքանչիւր ոք 'ի նոցանէն որպէս զիարդ լինելոյն է՝ առնու, անգիտացեալ:

Verum interrogandi sunt, quodnam tribunal sit, quod discernat inter justos, et injustos? Non est enim facile homini id statuere, quum non apparent singulorum mores; non enim licet insipienter de his judicare: neque ullo modo quis potest metiri ac intueri uniuscujusque vitam, quomodo acta sit. Quoniam sunt quaedam occulta, aliisque non visibilia facinora ab ipsis perpetrata; quamquam ipsi justi apparuerint: cum tamen solam providentiam nihil lateat. Si ergo incognita est hominibus vita singulorum, non erit dicendum justos cum impiis perditos fuisse; quandoquidem sapienti judicio omnia operatur providentia. Ac nos quidem ignoramus, quis impius sit, quis justus; providentia tamen tenet arcem scientiae, haud nescia quae sit certissima singulorum vita. His ita se habentibus, nullatenus vituperare quis praesumat providentiam, ac si sine judicio comprehendente unumquemque ad finem adduxerit; quasi vero singulos sine delectu rapiat ignoranter,

Իսկ արդարք թէպէտ և իցեն ընդ

Attamen si etiam justi cum impiis

1 Զսոցա. lego զսոսա, *haec*, vel զսոցայս, *horum res, commoditates* etc.

անիրաւամն կորուսեալք, և զայն ևս կամեսցի ոք վիճել, և ապացոյց հաստատուն նմա ոչ գուցէ, բայց սակայն 'ի մէնջ սա առատապէս յանձանձարար լըսիցէ. ոչ ճախարակեալ ասեմ բանիւք, այլ և ոչ սուտ զարդու սանդճագրեալս, այլ ճշմարիտ և անշուշտ տեսլեամբ խնդրելւոյս զգիւտ՝ այսպէս առեալ։

Նախախնամութիւն յորժամ զարդարն տրտմեցուցանէ, ոչ դատաստանաւ գործէ զաս 'ի նմանէ պարգևեալսն. քանզի ոչ փոխէ զարդարոյն բարս՝ ընդ ակամայ ախտիւք զառաքինին արկանելով։ Արդ եթէ միշտ նոյնպէս ունի առաքինի այրն, զի թէպէտ և պատերազմ հասցէ, յանխռովութեան է միշտ, և տրտմեցուցանէ զսա և ոչինչ, է՞ այսուհետև ասել անխնամութիւն եղեալ զսացս պատերազմին 'ի վերայ եկս, թէպէտ և արդար ընդ անիրաւի սպանանիցի։ Քանզի այն՝ որ առաքինութեանն էր ցանկացեալ, չար ոչ համարէր ընդ անիրաւին մեռանել, իբր զի ոգիքն նորա միշտ յանախտութեան կան մնան։ Արդ եթէ ոչինչ տրտմեցուցանէ զառաքինին, նախախնամութիւնն ոչ ապա ուրեմն զըրկեսցէ զարդարն, թէպէտ և ընդ անիրաւս մեռցի։ Քանզի ոչինչ սա 'ի յիշխան առաջնորդ միտսն ախտ կրեաց։ Իսկ որ յանախտութեան խորհուրդս կայ մնայ, ի՞բր ախտ կրեաց։ Ո՞րպէս սա զնախախնամութիւն ըստգտացէ՝ ոչինչ սորա խորհրդով կրեալ։ Քանզի ակամայ դէպս անցիցն՝ պարտ է զախտս ասել. իսկ յորս ինքնայօժար կամօք, թէպէտ և ընդ այլս չարս թուեսցի, ոչ իւիք զայն՝ որ կրեաց՝ ախտս համարեսցի. թէպէտ և յոյժ ցաւագինք իցեն։

Քանզի մեծ և այս ևս շնորհ արդարոյ է, այն որ յաղագս մահու՝ աներկիւղութիւնն է. և վասն այսորիկ հաստա-

perirent, atque hoc quis tueri velit, licet non habeat prae manibus demonstrationem firmam; nihilominus humaniter nos audiat, multa, nec ea tamen verbis comptis, neque falso ornatu ficta scribentes, sed vera ac indubia argumenta, ex quibus veritatem quaesitam hoc lemate deducere poterit.

Providentia quum plectit justum, non jure judiciali agit, auferendo dona ei data: non enim mutat justi mores, vitiis involuntariis subdens hominem virtute praeditum. Si ergo semper similiter se habet vir generosus; ita ut, etsi in praelium advenerit, in tranquillitate est semper; et nihil eum tristitia afficiat, est ne itaque locus dicendi improvidenter factum fuisse, ut pugna superveniet, etsi occidatur justus cum injusto? Nam qui virtutis ardebat desiderio, vix malum censebat se cum injusto mori, eo quod anima ejus semper remanet in integritate. Si ergo hominem virtute ornatum nullatenus offendit providentia, non utique injuriam facit justo, etsi cum injustis moriatur. Quoniam nullum is vitium praetulit in mente principaliter dominante[1]: qui vero permanet in consilio vitiis carente, quomodo vitium in se ferat? Quomodo iste providentiam accusabit, cum ipse nihil in mente passus fuerit[2]? Quandoquidem quae contra voluntatem accidunt, ea quidem licet passiones dicere; in iis vero, de quibus gaudet quis suapte voluntate, etsi cum malis caeteris passim connumeretur, nullo modo id, quod patitur, passionem putabit, quamquam nimis dolorosum sit.

Siquidem et haec quoque magna est gratia justo, nullo modo mortem timere: ideoque constantem hunc dixerim,

1 Id est, ut Gr. ἐν τῷ ἡγεμονικῷ τοῦ νοῦς.

2 Vel, consulto passus: aut, nihil (mali) passus ejus consilio.

տուն զայս զօր տատացից, 'ի ձեռն որոյ զարդարութիւն և ոչ մահ վրդովել կարէ ։ Վասնզի նախախնամութիւն զսա ոչ եթող ։ Ամպարշտաց և յառաջ քան զպատերազմական, մահ՝ անխնամութիւն ասացեալ ։ Իսկ որ առ յարդարութիւն առաքինի է, և զսորա զճշմարտութեան զգոյնս էառ, ոչ պահանջէ նախախնամութիւն ամպարշտաց՝ ինքն ընդ սոսա մեռանել՝ առ ոչինչ զօլ համարեալ. և անախտ խորհրդով յար միշտ ժուժալ կամի, անխռովութիւն իւր սրտին հանապազ առ թելով ։ Զայս առնուլ կամեցեալ զմեծ շնորհ, գիտէ զանմահ խորհուրդն՝ 'ի ձեռն անախտութեան ըզնախախնամութիւնն ունել պահանջել ։

Արեսցէ ախտ, մեռցի որ զնախախնամութիւն ոչ գիտէ, ցաւեսցէ սմա և մեռցի, մխիթարութիւն նախախնամութեան ոչ ունելով ։ Արդարոյ աներկիւղութեամբ մահ խնդութեամբ ընկալելոյ, յուսոյ նախախնամութեան անախտութիւն օգնոյն ընկալեալ ։ Վասնզի բարեբախտութիւն ոչ է արժան կարծել զպտղոյն և զայլոցն ամենեցուն, և զմարմնոյ զառողջութիւն, և զերևելի փառաց, (որ) առաքինութիւն առանց 'ի բաց մեկնելոյ ընդ նմա ոչ իցէ ։

Զկրիսոս, պակտուղոս՝ ոսկեղէն յորձանս բերելով՝ ոչինչ օգտեաց ։ Պսերքսէս բազմամբոխն ոչ ուրեք գոյ ։ Աղեքսանդրոս մակեդոնացի ո՞չ է մեռեալ ։ Իսկ կիւրոս 'ի կնոջէ անարգապէս, խորհուրդք պատերազմականք ո՞չ արգելին ։ Արդ ո՞ւր են այսքանք խահից և ազգի ազգի հացարարացն դաստապակք՝ նոցա անօգտիցն ։ Ո՞ւր են մարմնոյն զօրութիւնքն. պատմեսցէ Այաս՝ եթէ է. ասասցէ աքիլլես ։ Թէ գո՞յ ուրեք մարմնոցն գեղեցկութիւնք, ասասցէ եղենէ, ծա-

eoquod justitiam (suam) neque mors deturbare potest; quia providentia non ipsum derelinquit. Impii etiam extra praelium mors, improvidentia dicenda est: qui vero secundum justitiam virtutem colit, et ejusdem veritatis colorem sibi adsumit, non exigit a providentia, ne cum impiis moriatur [1], pro nihilo id reputans; sed potius deliberatione vitiis carente illi semper est paratus, tranquillitatem semper suo animo comparando. Hanc optans accipere magnam gratiam, novit immortale consilium, providentiam per integritatem assequi.

Patiatur morbum, et moriatur, qui providentiam non novit; dolore afficietur, et ita morietur; sine consolatione illa, quam praestat providentia. Justus autem fortiter, imo hilariter morte suscepta, providentiae fidens integritatem animae praeseferet. Non enim licet felicitatem constituere in copia fructuum, omniumque reliquarum rerum, et corporis sanitate, visibilique gloria, quum non simul adest virtus.

Croesum Pactolus aureas undas ferens nihil juvavit. Xerxis turba illa ingens jam nullibi est. Alexander Macedo nonne mortuus est? Nonne a muliere turpiter bellicosa Cyri consilia impedita fuere? Ubinam sunt tot et tanta epularum, et diversi generis coquorum ministeria inutilia? Ubi sunt corporum vires? Narret Ajax, si adest; dicat Achilles. Daturne alicubi pulchritudo corporis [2]? Dicat Helena, narret Paris, Amazones referant. Quod si haec animae providen-

1 Sensus est expeditus, sed lectio anceps ամպարշտաց՝ ինքն etc; ita ut in margine notatum erat զոչն : ego vellem զաննմանն, ac si diceretur, *non exigit providentiam dissimilem*.

2 Integra linea a codice deerat, quam ex altero exemplari supplevit aliquis in margine.

նիցէ բերկրիւս, ոմանգոնքն (ամպարշտին) պատմեսցեն։ Արդ եթէ այսորիկ ոգւոյ նախախնամութիւն գործել ոչ զօրեն, բայց հեծէ և հառաչէ 'ի սոցանէ 'ի բաց գնացեալ, իբր այսուհետև տասցուք ամբարշտաց բարեբախտութիւն գոլ ընդ պտղոց զստացուածոց տուրս։ Մեծացի ամպարիշտ հոգի, զի առաւել ախտս կրեսցէ՝ սոցա 'ի բացն բառնալով. իսկ զնաւազնացն՝ նաւականս մեծութիւն 'ի բաց գնացեալ։ Զարդարոյն զխորհուրդս բառնայ թողու յանախտութեան, թէպէտ և սա 'ի բաց գնասցէ։

Ուսցին այսուհետև, և դարձեալ ասեմ՝ ծանիցեն պարսաւասէր ոսոխք, իբր զի արդարն ամենևին ոչինչ կրէ ախտ, զի թէպէտ և կարի յոյժ բազում իցեն մարմնոյն վիշտք նեղութեան, յորժամ ոգիքն յանախտութեան կան մնան։ Զի թէպէտ և անանկութիւն, և սով, և հիւանդութիւն հասցէ. քանզի մատուցանէ նախախնամութիւն արդարոյն անախտ բարուցն զառն արժանոյ փոխեալ զկամս կատարելով. թէպէտ 'ի չարաց ըմբռնեսցի։ Վասնզի նախախնամութեան առանձինն է, իւրաքանչիւր ումեք խնամ տանել։ Վասնզի անզարդ ոգւոց զարդ է նախախնամութիւն, յառաքինութիւն հրաւիրելով։

Վասնզի եթէ բանաւոր կենդանին մարդն, իբր զի մասն է, և մասին մասն ամենայն աշխարհիս, ասացաք նախախնամութիւն ունել անասնոցն, և բանաւոր կենդանեացն. բայց զի՞ է՞ և ոչ առաւել զընդհանուր զօրութիւնն, ամենայն աշխարհիս ընդաւորեալ նախախնամութիւն՝ ամենեցուն դարման տանել։ Թէպէտ և գուցէ բանիւ եղելոցն յոմանց ճողոպրէ։ Արդ եթէ նախախնամութիւն ոչ խրատեսցէ, ոչ սատակեսցէ, ոչ բարի արասցէ, ոչ օրէնսդրեսցէ,

tiam constituere nequeunt, quae gemens suspiransque ab his recedit, quomodo nunc dicamus dona fructuum possessionumque impiis felicitatem afferre? Ditescat impius, ut amplius doleat his sublatis, ut et nauta opibus navalibus deperditis: cum tamen justi animus maneat integer, quamvis haec abierint.

Noscant itaque, iterum dico, noscant adversarii amatores accusationis, quod justus nullam omnino in se patitur passionem, etsi nimium multae sint corporis afflictiones, donec animus permanet in integritate vitiis carente, etsi inopia, et fames, et infirmitas superveniat; quoniam providentia ea praestat justo, quae integris ejus moribus respondeant, alio modo adimplens voluntatem; etsi malis circumdetur. Providentiae siquidem proprium est curam gerere singulorum; cum sit inornatorum animorum ornamentum providentia, ad virtutem invitans.

Porro si rationale illud animal, hominem inquam, eo quod pars sit, et partis pars totius mundi, diximus providentiam habere ad curanda tam bruta animalia, quam rationalia; cur non majori jure virtutem suam universalem exerceat providentia insita universo mundo, cunctorum habens curam; quamvis effectus impediatur quandoque apud nonnullos ratione praeditos [1]. Si autem providentia non corripiat, non puniat, non bona faciat, non leges ferat, qualis illa erit

1 Non puto Philonem his hominis libertatem adeo tueri, ut Providentiae injurius evadat.

և իբր նախախնամութիւն, ասացելոց անգործ և անվճար մնացեալ։

Քանզի հայր զորդի ոչ խրատող եղեալ՝ նմանեսցէ, և ոչ վարդապետի մնասցէ մտերմութեամբ ուսումն ծանօթից մատուցանելով, այլ որպէս արժան է։ Օ՛ն եթէ նոքա դժուարեսցին, դու գիտես զիւրաքանչիւր պարտիս փոխանակ հատուցման։ Այլ ոչինչ ունիս ասել չար ինչ արարեալ, զպիտանացուն իւրաքանչիւր ումեք մատուցանելով։ Ուստի՞ զայս ունելով գործես, աշխարհիս բնութիւն զայս ոչ առաւելացեալ. քանզի անշունչ զսա ասացեալ, և ՚ի նախախնամութենէ անդէլ։ Այլ իբր նախախնամական եղեր առանց նախախնամութեան, և մանաւանդ զի մասն ես ամենայն աշխարհիս. քանզի մասունքն ՚ի բոլորէն առնուն զուսումն։ Արդ եթէ զօրէն իբր յարգանդի՝ յաշխարհիս բնութեան լինելութիւն ընկալար, ամենայն իրօք հարկ է, թէ առ ՚ի սմանէ ունիս և զայն՝ որ կայն ՚ի քեզ՝ նախախնամական բնութիւնն։ Քանզի եթէ որք յարգանդի կենդանաստերին մանկունք, ՚ի նմանէ սնունդ առնու, առանց որոյ զկեանս ունել ոչ կարէ. յորժամ ոչ առ ՚ի նմանէ որ ամենեցուն պարտեցեալ է՝ տացի, իբր դու ասես ունել նախախնամական բնութիւն, բոլոր աշխարհիս բաղկացութեան ոչ նախախնամականի շարժմամբ բաժանեալ։

Արդ եթէ յիշատակարան արարեալ արուեստաւոր բանս հակառակ նախախնամութեանն կռթել կամիս, բառնալ յաշխարհէ զիմաստուն նախախնամութիւն, և վասն այսորիկ ասես, զիա՞րդ արդար հիւանդանայ, և կրէ խոշտանդանս։ Արդ զիա՞րդ արդար, եթէ ոչ ՚ի ձեռն անիրաւ ախտից զաղքատութիւն

providentia, omnibus hisce inutilibus, ac otiosis manentibus?

Atqui tunc patri erit similis, qui filium non instruat, et improvidus sit; aut magistro, qui (haud) fideliter doctrinam praebeat proximis [1]. Sed tu quidem, ut convenit, quamvis moleste alii ferant, scis quae singulis debeas juxta retributionem. Nec ullo modo dicere potes, quod aliquid mali factum sit a te, officium utile singulis debitum adhibente. Unde quaeso haec habens facis? Quando quidem naturae mundi haec ipsa desunt, eoquod exanimem ipsum dixisti, et providentiae expertem. Et quomodo providus fuisti sine providentia? maxime quod pars es totius mundi; partes autem a toto accipiunt disciplinam. Itaque si, quasi in utero, in mundi natura originem sumpsisti, omnino necesse est, ut ab ipso habueris et illam, quae in te est, providam naturam. Quoniam si infans, qui in utero vitaliter producitur, ab ipso nutrimentum accipit, sine quo nequit habere vitam, quomodo, si hoc idem ab illo, qui se omnibus obligavit, non praestatur, tu dicis habere te naturam providam, cum tamen in compagine totius mundi motus providentiae diffusus non est?

Quod si commentitia adstruens verba atque artificiosa, adversus providentiam vis armari, ut tollas de mundo sapientissimam providentiam; et ideo quaeris, quomodo justus infirmatur, patiturque afflictiones? (Ad haec dico.) Quomodo justus erit, nisi paupertatem injuste sibi illatam, velut opulentiam laetabundus

1 Vel ita accipe: *Pater filium minime struens similis erit nec etiam magistro* etc. Aut sic, *Neque magistro cedat, ut proximos edoceat, sicut convenit*. Obscuritatem auget sequens allocutio cum altera persona, sive cum adversario, sine connexione cum praecedentibus. Suspicor itaque aliqua deesse.

եթէ զմեծութիւն խնդութեամբ ընդունի։ Քանզի զայն՝ որ առաքինութեամբն զարդարեալ է, ոչինչ ամենեւին մղեալ հնազանդէ։ Զնախախնամութիւն սա ոչ ըստգտանէ. բայց այնոցիկ՝ որ ըստգտանեն, խնդամ ասացեալ, ինքն և յախտս նախախնամութիւն խոստովանէ։

Երկիր առ տնկագործութիւն՝ ոչ անախտ՝ կայ մնայ հաւատ։ Երկին պահեաց զիւր սահմանս ոչ թողեալ։ Արեգակն և լուսին և այլ ես աստեղք ՚ի վայելչական ընթացիցն ոչ դադարեցին։ Ծով ըստ քանոնս հրամանին ոչ էանց։ Ջրայինք և օդայինք և ցամաքայինքն ՚ի պարտեցեալ պիտոյից ոչ պակասեցան։ Բայց միայն ազատութեամբ հասեալ աշխարհաքաղաքացի մարդն, որում և իշխանական իմն պետութիւն տուաւ, զնախախնամութիւն սա եթող, զօրէնս արդարութեան անտես արար։ Ո՞չ է ո՞չ անիրաւ թուեսցի՝ զնախախնամութիւնն հատանելով, և ինքն իւրոյն նախախնամական զոլ ասելով, զամենայն գործելով հանճարաբար եթէ այր իմաստուն։ Իսկ եթէ սա ոչ է անիրաւ, յուսահատ եղեալ հրաժարելով՝ եթէ ոչ է ընդհանուր նախախնամութիւն. ինքն գիտուն զոլ կամեցեալ, զօրէն ստրկաց ունել կարծեցեալ զայնոսիկ՝ որ իմաստութեան մարթունք են։

Որում ասասցեմք արդեօք. ով իմաստուն, ուստի՞ զառաքինի և զիմաստուն մարթանաս ունիս, եթէ զի որ ծնաւ բնութիւն՝ անհանճար, և որ ընդհանուր նախախնամութիւնն է՝ անգոյ իցէ։ Այլ աւաղ այսպիսի ոմանց (՚է) յանդուգն համարձակութիւն որսացելոց, անշնորհակալութիւնս անբաղայս նախախնամութեան մատուցանել. որպէս զի ինքեանք առանց իւրեանց զբեալք իմաստունք թուեցան։ Բայց ես ոչ անհաւան լինիմ զոլ նախախնամութեան ՚ի

suscipiat? Quando quidem ornatum virtute nihil omnino est quod turbet aut deflectat. Providentiam is non accusat; verum accusatoribus valedicens, vel in ipsis morbis providentiam profitetur.

Terra perpetuo ac patienter easdem producere plantas non cessat [1]. Caelum ordinem suum immutabilem servat. Sol et luna, caeteraeque stellae a decenti cursu non cessant. Mare regulam mandati non excedit. Aquatilia, volatilia et terrestria debitis officiis non desunt. Solus libertate praeditus mundi civis, homo, cui et principatus quidam imperialis concessus fuit, talis inquam providentiam dimisit, legemque justitiae neglexit. Nonne iniquum videtur, rejecta providentia, semetipsum sui provisorem esse dicere; ac molientem omnia ingeniose tamquam vir prudens? Et quomodo non sit iste iniquus, pertinaciter universalem providentiam rejiciens, qui se doctissimum jactat, caeterosque homines prudentiae compotes sibi vult esse subjectos?

Cui dicemus utique: O sapiens, unde habes virtutis et prudentiae facultatem, quum quae te genuit natura, insipiens est, et universalis providentia nulla est? Sed vae hujusmodi hominibus tam audaci praesumptione occupatis! qui tam amenter se ingratos providentiae praebent; quippe qui sibi ipsis immerito sapientes videantur. Ego tamen numquam negabo esse providentiam permanentem inter fines comprehensionis suae; eamque existere, etiam cunctis elementis fa-

1 Vel ita: Terra ad productionem plantarum, non sine passione vitiorum, fidelis perstat.

ներքս սահմանից ըմբռնման հաստատելոյ իւրոյ կալ մնալ։ Իսկ զայս գոլ ասելով և տարերց ամենեցուն զայս խոստովանեցելոց։ Ուէ ո՞չ բան ասասցէ ասել՝ արուեստական գործն ոչ ինքնին լինել, այլ ՚ի հանճարէ մարթանաց իմաստուն գործն զկատարելութիւն ընդունիցին։

Արդ ահա զառնապատկեր տեսանելով զառնապատկերագործն ՚ի միտ առնուցումք. և կերպարան գեղաղեշաբար գրեալ տեսեալ՝ ընդ սորա գրողն հրաշանամք. և նաւ արուեստաւ հանճարով կազմեալ տեսեալք՝ զնաւակառուցն գովեմք։ Արդ եթէ մեք զարուեստական զգործն տեսանելով՝ զերաժշտական զարուեստադէտն ճանաչեմք, զիա՞րդ ոչ առաւել զամենեցուն զիմաստուն զնախախնամութիւնն հասմամբ ըմբռնութեան կալցէ աչք մտաց՝ վասն տարրացելոց աշխարհիս մասանց հանճարաբար կարգելոց։

Իսկ չարն կարծ յոյժ յոռի այր՝ անազդամկ է յաղագս նախախնամութեան։ Ի պտղոց կորստեան անձրևաց և կարկտի զ՚ի վերայ եկս ՚ի ջրոց՝ լուտալով, աշխարհիս մատակարարութեան նախախնամութիւն ոչ գոլ ասելով, պտղոց ինքն պակասութիւն ընկալեալ, և զեղեալ վնասն գիտաց, և սիրտն խայթեցաւ։ Իսկ որ ՚ի նմանէն գործեցան չարեաց գործք՝ ոչ տեսանէ։ Ո՛չ ի նախ անձին իւրում լուտասցի՝ զանիրաւսն գործողի։ Բայց ուսցի ՚ի ձեռն որոց ինքն ՚ի նախախնամութենէն պատիժ կրեաց, և զայնոսիկ որք ՚ի նմանէն անօրինաբար զրկեալ եղեն՝ սիրտն ցաւել։ Բայց պարտ է զսա անիրաւ համարել, վասն զի ոչ զոյգ պատիժ կրել ՚ի նախախնամութենէ կամի, զոր ինչ ինքն՝ և ոչ զորս կրեաց զրկանս, անիրաւ ՚ի վերայ ածէ։

Իսկ մեծ ամպարշտանքն նորա, զի և

tentibus. Nonne et ratio asserit opus artificiosum esse non posse, nisi ab ingenio quodam, quod opus ipsum moliatur, suscipiat perfectionem suam?

Ecce enim statuam videntes, statuarium intelligimus; et imaginem venuste pictam cernentes, pictorem ipsum admiramur; atque navem ingeniose fabricatam intuentes, architectum navis laudibus celebramus. Si ergo artificiosum opus videntes, artificem ipsum sollertem [1] adnoscimus, quomodo non magis universorum sapientem providentiam per comprehensionem perceptionis concipiat oculus animi propter constantes mundi partes sapienter ordinatas.

Malus autem homo, stulte nimis sibi persuadet non esse providentiam. In perditione fructuum aquarum copiam ex pluviis grandinibusque cadentem culpat, negatque providentiam mundi dispensatricem, eoquod ipse fructuum diminutionem passus fuerit: quoniam damnum sibi illatum novit, et cor ejus vulneratum est: quae vero facinora ab ipso (corde, vel homine) patrata fuerint, non videt, ut prius se ipsum damnet iniqua operantem. Discat tamen per ea, quae ipse a providentia passus est, dolere ex corde super iis, quos ipse injuste injuria affecit. Verum enim vero iniquum istum oportet reputare; quoniam suis factis paria non vult pati a providentia, et tamen quas ipse non est passus injurias, inique aliis infert.

Major autem ejus impietas ea est,

1 Երաժշտական, interim supponit in Gr. μουσικός. non pro musico, sed industrioso, eleganti, perito, ut patet ex conjunctis terminis.

այսպէս տեսեալ զխնամոցութ զնորա զմշակութիւն յայլոցն աղէտս, զանմիտս սուտցեալ հեշտի խոստովանեսցէ։ Եւ զայս պատուէ՝ ընտրութեամբ դատաստանի գործելով և ոչինչ, բայց ցանկութեամբ զյարձակմանն կատարելով, զօրէն պաճարաց զնիւթս ճարակելով, 'ի վերկոյս զխորհուրդս ոչ ունելով՝ զնախախնամութիւն քննութեամբ տեսանել, այլ զառ երկրաւս զամենայն ինչ տեսանելով։

Եւ զծովընթաց նաւն տեսանելով 'ի նաւահանգիստ անկեալ, սա զնաւաստին գովէ․ քանզի անգէտ և ոչ իւիք է՝ իմաստուն նաւաստուոյ զսա քեղացեալ․ ընդ նաւաստապետին միայն ընդ գեղեցկութիւն հրաշացեալ է, ոչ ընդ գործն։ Քանզի անշունչն ոչ փառս զայնոցիկ որ լինելոցն է՝ առնու․ բայց իմաստուն հանճարով զարուեստն յինքեանս ընկալեալ լինի զգովութիւն նաւին՝ առ այն, որ պիտանացու արուեստիւն 'զղեկին վարէր երթալ։ Արդ եթէ զնաւատորմիղն տեսեալ, խոստովանէ զնաւաստին, և զպաշտաւորսն քաջ գիտէ, ընդէ՞ր ոչ արդեօք զնախախնամութիւն յառաջ քան զաշխարհիս մասունս սա խոստովանեսցէ, 'ի նմանէ ամենայն տարերց քեղացելոց։

Քանզի և ոչինչ քան զնախախնամութիւն իմաստնագոյն ինչ ասել ունիմ, յորմէ տարրացեալք ամենայն մարմինք 'ի հարկէ զդաս կարգի ընկալան, և հնազանդեալք իշխանութեանն՝ ածեալք լինին։ Որ ոչ կամի, նախախնամութիւնն յիւրոց սահմանաց 'ի բաց ոչ գնացեալ։ Եւ օրինակք բնութեան 'ի ձեւն տեսանելոյ նախախնամութիւն գոլ խոստովանին․ քանզի տեսակք և ձեւք բաւական են ծանուցանել զարուեստագէտն․ թէպէտ և բանիւ տարրացեալ մարմինքն՝ լռութիւն բերեն․ քանզի սիրեն՝ որք յումեքէն են կերպարանեալ՝ զճարտարիչն խոստովանել։

quod his non obstamtibus, scimus illum procurare aliorum miseriam, quam pro nihilo ducendam ultro fatetur. Idque pro honore sibi ducit, nihil recto judicio agens, sed tantum cupidini obsequens, effrenique animi motui, ac jumentorum instar qui obvia quaeque depascuntur: nec enim altius attollit cogitationes suas, ut providentiam per indagationem inspiciat: sed quae sunt super terram solum et omnino intuetur.

Quum navem, per mare currentem ad portum appulisse quis viderit, is nauclerum laudat; quoniam nullatenus nescius est a sapiente navarcho eam gubernatam fuisse; ita ut navarchi solius perfectionem miretur, non operis. Etenim quod est inanimatum, non recipit gloriam de factis rebus, sed qui per ingenium industrium praesetulerit artem, meretur laudem navi debitam, eo quod utili artificio moderatus clavum fuerit ad procedendum. Si ergo qui classem cernit, statim agnoscit esse aliquem navarchum principalem, nec ignorat esse et ministros ejus, cur quaeso providentiam ante omnes mundi partes non fateatur, si cuncta elementa ab ipsa gubernantur?

Siquidem nihil quod sit providentia sapientius, possum proferre, a qua cuncta corpora efformata necessariam distributionem suscepere, ejusque potestati subjecta ab ea semper reguntur. Siquis vero nolit (obsequi,) providentia suos fines non transgreditur. Insuper exempla naturae primo intuitu providentiam esse demonstrant; etenim rerum species et formae satis sunt, ut notum faciant artifieem, etsi voce destituta corpora ordinata silere videantur: quando quidem amant formata ab aliquo proprium auctorem confiteri.

Բայց միայն ումեմն մարդոյ դիպաւորեցաւ ոչ խոստովանել, թէ է ամենեցուն արարչական նախախնամութիւն. յայնմանէ որ գոյ 'ի նմա ինքնիշխան ազատութիւն, յառողջամիտ խորհրդոց առաւնցեալ, քան ընդ նախախնամութիւն առաւել ընդ անխնամութիւն զարմացեալ. քանզի 'ի բաց ձգէ նա 'ի նախախնամութենէ զսանձս յատամունս առեալ, առողջ իմաստութեան կեանս 'ի նմանէ առնուլ ոչ համբերեալ. բայց զամենայն ինչ՝ որք գործին 'ի նմա, 'ի ծնունդ և 'ի բախտ ակնարկէ վիճակելով. և զնոյն ինքն զբոլոր զաշխարհիս բնութիւն յաստեղց մատակարարել:

Ոչ լուսափայլ ինձ, և ոչ ճառագայթեալ երևի, բայց մեծ անիրաւանք գոլ՝ շնչորսականս այս ձեռնարկանք, և առ 'ի պատրանս խաբէութեան արուեստիւ հնարեալ, ուր յինքնիշխան ազատութենէ զինքն սա զրկել կամեսցի. և ըդ-պարսաւանս այնոցիկ որ 'ի նմանէն յանդգնաբարն գործեցան անիրաւութիւնք, հայթայթմունս գտանել կամեցեալ: Որասատոյ վէմ հաստատուն գործելով, զայնս որք 'ի վատթարութեան յօժարման նորա եղեն կամք՝ ոչ իւր ուրուք գոլ խորհրդոց ասելով, բայց աստեղացն՝ որ յերկնի շուրջ գան, և զորակ շարժմունս հակաւ յիւրաքանչիւր ոք կատարեն:

Բանզի ո՞չ՝ որ ճշմարտութեանն ցանկացող է, և առաջիկայի հարցուածոյս 'ի գիւտ լինել կամեցեալ, ստոյգ և անշուշտ կամօք՝ լուսաւոր և մտերիմ խորհրդովք՝ եսես արժանի յայտնապէս ըդ-հարցեալսն: Բանզի զանազանապէս կարծեցեալք՝ խորհրդոցն այլափոխութիւնք, յուղղութենէն սխալեալ լինին: Բայց զայն յառաջ քան զամենայն գործ գիտել պարտ է, եթէ ո՞չ վրիպեալ յանցիցէ զինքնիշխանութիւն մարդոյն 'ի բաց

At est homo solus inter homines, qui fateri nolit, dari universorum providentiam effectricem, ex illa audacior evadens quae ipsi inest libertas arbitrio praedita: hinc enim ex sana mente in delirium venit, miratus improvidentiam potius quam providentiam. Quoniam rejicit ille fraenum suis dentibus a providentia impositum, non sustinens accipere ab ea sanam sapientiae vitam, sed omnia per eam (vel in se ipso) facta ad genethliaca commenta, fatum, fortunamque reducit; totamque ipsam mundi naturam ab stellis dispensari dictitat.

Enim vero hoc nec clarum, nec luminosum mihi videtur argumentum, sed injuria [1] ingens ab animali homine excogitata, et adinventio artificiosa, quae fallaci illudat deceptione; ita ut se ipsum libero arbitrio privare quis velit, et adversus objurgationes iniquitatum ab ipso patratarum praetextum sibi comparare. Lapis utique repertus durus, eam quae in pravitate praeseferebat voluntatem, haud sui consilii proprii opus dictitans, sed astrorum in caelo circumactorum, quae qualitates motuum necessario in animis singulis perficiant.

At qui veritatem amat[2], et praesentis quaestionis solutionem optat certa constantique voluntate, is lucido ac fideli animo cernit evidenter satisfactum fuisse huic interrogationi. Nam si alio atque alio modo consilia transmutentur, oberrant a rectitudine. Verum illud ante omnia quaerere oportet, an ne errans delinquat ille, qui libertatem hominis abscidens, omnia adscribit genethlialogiae? Id modo multiplici interrogatio-

1 Անիրաւանք prodit Gr. *ἀδίκημα*, injuria, injusta actio, laesio, scelus.

2 Vel, negativum cum interrogatione: *Alioquin, nonne studiosus veritatis* etc.

հատեալ, այլ և աստեղացն ծնունդ զամենայն ինչ անխարկելով. (զոր) հանդերձ բաղում ճշմարիտ հարցուածով մեք հարցաքննեսցուք: Ոչ ի՛ եթէ պարտ է քաղաքաց առաջնորդաց զմահու դատաստանս ՚ի վերայ չարաց հատանել, իբր ոչ ինքնիշխան բարուքն զչար գործեցին. այլ աստեղացն փոփոխմամբ ՚ի չարիսն յարձակման առնել՝ զիւրեանց կեանս ինքեանք անձամբ ուղիղ վարել ոչ զօրեն, ՚ի գռողական աստեղց իշխանութենէ բռնի վարեցեալք:

Իսկ զի՞նչ ինչ այս եղիցի արդարութիւն, զայնոսիկ որ ակամայ մեղան՝ ՚ի պատիժս տալ. զոր գործս ոչ կամաւ գործեցին, իւրեանց բարուց ինքեանք իշխանութիւն ոչ ունելով: Ո՞ր օրէնք զոգիս ունել կարեն զգործոց զչար ընտրութիւնս կամաց, յորժամ ինքնիշխանն ՚ի նմա ոչ իցէ: Ո՞րք կուսել կարասցէ առ ՚ի ծնունդ ոգւոց, յորմէ և ակամայ վարի: Իսկ ում ումեք իցեն ազատութեան օրէնք՝ հրամայեսցեն զոր կամին. քանզի ունին բարքն զինքնիշխանն գործել ըզկամս, և ոչ յումեքէ արգելեալք: Իսկ որ ամենայնիւն յազատ բարուց ոգի զըրկեալ է, ասել գոյ առ դատաւորն, թէ պէտ և արդար իցէ սա. Թոյծ, ազատեա ՚ի կապոյ ծննդեանն, և տուր օրէնս՝ զոր դու կամիս. և յինէն յորժամ ոչ գործել վճարեսցին, ած ՚ի վերայ խոշտանգանս տանջանաց՝ ազգի ազգի կապանօք. և մահու սատակեա, եթէ ոչ առնեմ զդատողիդ կամս:

Ապ եթէ մարտնչի աստեղցն ծնունդ առ իւրաքանչիւր ուրուք կամս, զի՞արդ ոք արդեօք ըստգտցէ զայր յերկնայինն աստեղաց ՚ի չար բռնի ձգեցեալ: Իսկ ոչ՝ եթէ ինքն ած օրինադրեսցէ. քանզի ունի սա և այ ասել, Թոյծ ՚ի ծննդենէ զոգիս, և առ զօրէնացն զգործաւոր: Ո՞ հայրասպանն և մայրասպանն դատաստանս

ne indagabimus. An scilicet rectores civitatum oporteat sententia mortis animadvertere in malos; quippe qui non libero arbitrio mala fecerunt, sed stellis mutatis in mala ruentes, vitam propriam ipsi per se recte ducere nequiverunt, ex tyrannica astrorum potentia per vim ducti?

Nam quae illa est justitia, eos qui inviti peccarunt, poenis tradere; quum ea facinora non voluntarie peregerint, haud habentes ipsi potestatem supra mores proprios? Quae lex potest detinere animum, ne in operibus imitetur pravam electionem voluntatis, si nulla sit in ipso libertas? Quomodo potest obstare fato, a quo vel invitus abducitur? Quicumque libertate donati sunt [1], illis quod libuerit lex imperet; habent enim mores eorum voluntatem libere agentem, a nemine impediti. At cui animus omnino destitutus sit libertate, huic licebit dicere judici etsi justo: Dissolve, libera me a vinculo natalitiorum, et postea da mihi legem, quae tibi placet: quando vero non mandetur a me executioni, inducito super me vexationes tormentorum, varia vincula; et morte ipsa deperdito, nisi faciam judicis mei placitum.

Sin autem obstant natalitia sidera voluntati uniuscujusque, quis reprehendat hominem a caelestibus astris in malum per vim tractum? Non sane Deus ipse, si legem ferat; potest enim subditus iste dicere Deo quoque: Solve animum meum a natalitiis, et habebis legis observatorem. Quis parricida ac matricida jure

1 Aut: cuicumque insit (vel praesit) libertatis lex.

յորս գրէ այսպիսիս, 'ի ձեռն որոց իշխեաց ասել. Իբր թէ՝

Երկնի զրուանն որդի է. ուստի զքա-րր ծնընդականսն, բարի շնորհ հատուցմանն փոխանակ ծննդեանն հատուցանելով հօրն։ Իսկ արամազդ 'ի զրուանայ 'ի բաց հանեալ զթագաւորութիւնն, 'ի տարտարոս եարկ զնա. և որ այլ ևս այսմ նմանն։

Վասն որոյ և հրաշացեալք ընդ գովութիւն նորա երաժիշտքն աստուածքն զգեղեցիկ երգսն ուսուցին.

Գառինս արածէր յեղիկոնայ յաստուածնակ լերինն։

Իսկ հոմերոսի սակայն զկատարելագոյն ծայրիցն քերթողականութեան պարգևէին. վասն որոյ. զի զհեփեստոս կաղ պատմեաց, և 'ի բաց ձգեալ զոտանէն՝ յաստուածային սեմոցն։ և զափրոդիտէս 'ի մարդոյ խոցեալ, և 'ի խակագոյն։ և յորոց վերայ ոչ էր արժան, զարամազդ՝ իբր զքոյր, միանգամայն և զկին, երկուս մեծամեծս ածեալ յանլոյծ խշտի, ոչ յամեաց իբր զխեղդամնէ կախեալ։ Իբր զի պարտ է որոց անգամ մի յառաջագոյն տեղի տուեալ, վրիպեայց դադարել։ Իբր զի կարի յոյժ կարացեալ՝ ինչ վճարել, պանծալի իմն պատմէ, ասելով.

Ոչէ ոչ յիշես, յորժամ կախելով էիր
'ի բարձու զոտանէ,
և սալս երկուս արկի զոտիցդ, և 'ի
ձեռսդ կապանս արկի
ոսկիս առանց հատանելոյ. իսկ դու
յարփիւն և յամպս
կախեալ կայիր, և աղաչէին աստ-
ուածք յերկայնն յողիմպոսի,
և լուծանել ոչ կարէին։

scribit ea, quae praesumpsit hoc pacto proferre:

Caeli Saturnus filius est, et illum pro beneficio generationis virilia resecuisse patri. Jovem vero, adempto Saturno imperio, in tartarum eum immisisse; et his similia.

Quare vatis encomium Dii admirati carmina pulchra illum docuere.

Agnos [1] pascebat in Helicone monte a Diis habitato.

Homero tamen perfectiorem poëtices apicem tribuere. Quam ob rem? Quoniam Vulcanum claudum retulit, et pede prehenso projectum ex divinis liminibus [2]. Atque Venerem ab homine vulneratam, et quidem crude. Et Jovem praeter eam, quam habebat, quamvis nefas erat, sororem simul et conjugem, duas praeterea adduxisse ad insolubile cubile; ideo accidit eum tamquam ex laqueo suspendi: quippe quod per necessum, quibus quis antea cesserit, nequeat cessare; quasi vero magnum quoddam potuerit perficere, jactabunde narrat, dicens [3]:

An non meministi, quando pependisti ab alto de pedibus,
Et incudes duos demisi de pedibus tuis, et in manus vincula misi,
Aurea vix frangibilia. Tu vero in ae-there et nubibus.
Pendens stabas: Supplicabantur autem Dii per longum Olympum;
Solvere autem non poterant.

1 Hesiod. Deorum gen. 23. Ἄρνας ποιμαίνονθ' Ἑλικῶνος ὑπὸ ζαθέοιο.

2 Homer. Iliad. I. 590. etc.

3 Homer. Iliad. XV. 18.
Ἦ οὐ μέμνῃ, ὅτε τ' ἐκρέμω ὕψοθεν, ἐκ δὲ ποδοῖιν
Ἄκμονας ἧκα δύω, περὶ χερσὶ δὲ δεσμὸν ἴηλα
Χρύσεον, ἄῤῥηκτον; σὺ δ' ἐν αἰθέρι καὶ νεφέλῃσιν
Ἐκρέμω, ἠλάστεον δὲ θεοὶ κατὰ μακρὸν Ὄλυμπον·
Λῦσαι δ' οὐκ ἐδύναντο . . .

Իսկ զի՞ ևս մի ըստ միոջէ յաստուածս 'ի նմանէ ասացելոց պղծաբարբառ թըւել պիտի, զի լի է քերթուածք նորա առատ հայհոյութեամբք: Արդ. արդեօք ո՞չ արդարագոյն էր, Թրակացւոյն Թամիւրայ, զի ոչ՝ ընդ երաժիշտս յաղագս երգոց հակառակեաց՝ կուրանալ, քան թէ զայնոսիկ՝ որ առ հասարակ զամենայն աստուածոց զաղգէ վատ խօսեցան, ոչ միայն զքերթուածս, այլ և զլեզուն՝ թէ պատրաստ է ասել, 'ի բաց հատանել: Իսկ արդ այժմ 'ի գեղեցկութենէ անուանաքերթութեան առաւելեցելոյ՝ քաղցրաձայնութեամբ ծածկէ զմիտսն՝ զուարճացուցանելով զլսելիս: վասն որոյ 'ի մանկութենէ մինչև ցծերութիւն առանց դադարելոյ զնա ընթեռնլով խաբեալ լինիմք, զվնասն համարելով օգտութիւն: Այսմ որոյ ամենեցուն անարժանագործացն 'ի բաց գնալ մոռացեալ լինի՝ սքանչելի և յաւէտ յիշել քերթողացն յաղագս աստուածոցն շատախօսութիւնք:

Quid plura singillatim recensere oportet ab illo adversus Deos obscoene dicta? Plena sunt enim poëmata ejus abundantibus blasphemiis. Non ne itaque justius esset, non tam Thamyren Thracem cum Musis de cantu certantem, oculis mulctari, quam eos omnes, qui de Diis omnibus oblocuti sunt, puniri, non poëmatibus solis, verum etiam linguis abscissis? Nunc autem venustas poëtici nominis mira cum melodia operit sententiam, dum oblectat aures: quapropter a juventute usque ad senium incessanter eam legentes fallimur, damnum pro utilitate ducentes. Ideo caeteris cunctis sceleratis in oblivionem datis, attamen mirabilium semperque memorabilium Poëtarum de Diis loquacitas perpetuo durat.

Քանզի գողոց հերմէս է ամուր ապաւէնի, և շնոց՝ արէս, և ամենեցուն առաջնորդ՝ արամազդ. և սուտ են ամենեքեան. քանզի ճշմարիտ խօսի առ քերթողսն և ոչ մի ոք յաստուածոցն: քանզի միշտ որ համանմանս զրկութիւնս առնեն, աղերս ապաքանութեան է նոցա վեհքն և լաւքն: Այլ և ոչ քսենոփանէս, և կամ պարմենիդէս, և կամ եմպեդոկլէս, կամ որք միանգամ այլք ա̄ծաբանք, ըմբռնեցան 'ի քերթողականութենէ ա̄ծարեալք. այլ սակայն տեսութիւն զբնութեանս խնդութեամբ ընկալեալք, և առ հասարակ զամենայն իւրեանց կեանսն 'ի բարեպաշտութիւն և 'ի գովութիւն ա̄ծոցն նուիրեալք՝ բարի արք եղեն, բայց քերթողք ոչ բախտաւորք: զորս պարտ էր 'ի վերուստ շունչ ընկալեալ շնորհ 'ի յերկնէ, չափս, նուագս, մատունս երկնաւոր և ա̄ծային, իբր ճշմարիտ քերթուածս թողուլ՝

Furum enim Mercurius refugium est tutissimum, adulterorum Mars; omnium vero dux Juppiter: et omnes sunt mendaces; quandoquidem vera de Diis Poëtarum nemo dicit: quia semper qui consimiles perpetrant injurias, apologiae loco eadem referunt de supremo quoque atque optimo. Non ita tamen Xenophanes, aut Parmenides, aut Empedocles, sive alii, quicumque theologi a poësi capti sunt divini viri, sed potius theoriam naturae jucunde sibi accommodantes, et vitam omnem ad pietatem laudemque Deorum dedicantes, optimi quidem viri comperti sunt, poëtae tamen non felices: quos oportebat divinitus spiritum sortiri, gratiamque de caelo, metrum, carmen, digitumque caelestem ac divinum, ut poëmata vera relinquerent velut prototypum libri perfectum: et pulchrum cunctis exemplar

իբր սկզբնատիպ զորոյն կատարեալ, և գեղեցիկ ցոյց այլոցն եղեալ։ (sive indicium, argumentum).

### ՓԻԼՈՆԻ։

Ո՛չ գիտացեր, ով սիրելի իմաստութեան, 'ի ձեռն սոցա ամենայն մարդկան ազգի առհա զանարամութենէն ամբաստան լինելով, զի՛ արդ ոչ այսպիսի է։ Զի եթէ եհաս փառքն մինչ 'ի տիեզերս երկրի եսիոդեին և հոմերոսեին, զայն որ յիրս միտքն են 'ի պատճառի դնել։ Որոյ պատմողքն բազումք եղեն, զարմանալեաց յայնցանէ՝ որ ըստ նոցա ժամանակեին եղեն, մինչև ցայսօր զարմանալի են։ Իսկ առկայս՝ զի եթէ էր ինչ զոր թուեցան նոքա յանցանել, վասն այսորիկ ոչ էր պարտ պարսաւել. բայց վասն բազում իրաց՝ զորս ուղղեցին ուղղութեամբ, որովք կենաց օգուտ արարին, գովել։ Նաև զաշխարհ արժան է գովել, ոչ 'ի վատթարսն որ յերկրի են հայելով՝ 'ի կառաճուղս, կամ 'ի մրջիւնս, կամ 'ի լուս, և կամ յայլ ինչ համանմանս, այլ զերկնիս զբնութիւնն քննելով, զարեգական պտղոյտս, զլուսնոյ ձեւս աճմանն, զծովու տարածմունս, զպարոյս գետոց, զօդոց զփոփոխմունս, տարեւորացն զփոխանորդութիս զժամանակաց, զծնունդս կենդանեաց, զտնկոց յատկութիւնս, պտղոց զբերս. այլ ևս բազում, որոց իւրաքանչիւրոք աստուածային արարեալ արուեստիւ հրաշալի է գեղեցիկ։ Իսկ այլ ևս՝ որ ոչ և այս, զոր առկայս մի յառաջագոյն յիշեցեր, ոչ հայհոյութեամբ ասեալ է 'ի ներքս աստուածոց, այլ է նշանակ ծածկեցելոյ բնախօսութեան, զոր ոչ է արժան՝ որ ոչ են իւղագլուխք, զխորհուրդն հանել 'ի վեր։ Բայց կա-

### PHILO, [1]

Nescis, o sapientiae amator, per ista dicta (vel per dictos poëtas) interim insipientiae accusans totum genus humanum, non ita rem se habere. Si enim pervenit usque in orbem terrarum gloria Hesiodi et Homeri, in causa fuere sententiae sub rebus comprehensae; quorum enarratores quamplures sunt cum admiratione, et ab ipsis eorum temporibus, ad hodiernam usque diem admirationi sunt. Si tamen in nonnullis rebus deliquisse visi sunt, non ideo oportebat illos vituperare; sed potius propter plura recte peracta, quibus vitae utilitati profuerunt, laudibus celebrare. Etenim et mundum ipsum convenit laudare, nec quae vilia in terra sunt, attendere, ut scarabaeos, vel formicas, aut pulices, et alia consimilia, sed caeli naturam contemplari, solis circuitus, lunae formas in crescendo, maris extensiones, elationes fluminum, aëris mutationes, annuas tempestatum vicissitudines, generationes animalium, plantarum proprietates, fructuum proventum, aliaque quam plurima, quorum unumquodque divina factum arte mire pulcherrimum est. Omitto quod neque illud paulo ante a te memoratum, blasphemiam includit de Diis, sed est indicium inclusae physiologiae; cujus non licet apud illos, quorum capita minime sunt uncta [2], patefacere mysteria. Verum obiter tibi specimen aliquorum ve-

1 Hic quoque Arm. in secundo casu dixit, *Philonis*.

2 Ut Mystici, mysteriorum ministri; vel teletargi, initiati, etc. Verum ad praesentem locum potest referri illud. S. Jo. Damasceni dictum, quod notatur inter fragm. Philonis, Gr. Lat. Tom. II. p. 651. οὐ θέμις τὰ ἱερὰ μυστήρια ἐκλαλεῖν ἀμυήτοις.

ուոյց կարկատան քեզ զօմանց տեսլեանեն իբր օրինակաւ ցուցից, որպէս հնար է զկարծիս հաստատել ըստ օրինաց. ըստ որում օրինաց հրաժարեցուցեալ է, խորհուրդս որ ոչ են ընկալեալ՝ խորհրդոց հանել 'ի վեր :

Եթէ զայն որ ըստ Հեփեստոսին է առասպելեօք պատմեալք, տարեալ հանցես 'ի հուր. իսկ որ ըստ Երային՝ յօդոյ բնութիւն. իսկ որ ըստ Հերմային՝ 'ի բան. և զայլոցն յիւրեանցն աստուածաբանութեանն հետովք կարգի: Նոյնժամ զորոց սակաւ մի յառաջագոյն ամբաստանէիր ըզքերթողաց, գովօղ, իբր զի միայն արժանավայելչապէս զաստուածութիւնն գովեցին, եղիցես : Ապա թէ ոչ կանոնս այլաբանութեանց կամ կարծեաց ոչ ընդունէիր, նոյն անցք անցցին ընդ քեզ այնուցիկ՝ որ յոյժ տղայք են, որք վասն անտեղեկութեան զապելլականաւն զանց արարեալ նկարուք տաստակացն[1], առ այնոցիկ որ ընդ փշտին գրեն՝ անցեալ կան, զարմանալով ընդ այն՝ որ ծաղուն արժանին է, և աղարտելով զայն՝ որ ամենայն ընդունելութեան արժանի է :

Արդ ընդէ՞ր Եմպեդոկլէս, և Պարմենիդէս, և Քսենոփանէս, և հոմանմանախանձորդք նոցա պարք, ոչ ընկալան հոգի երաժշտաց՝ աստուածաբանելով: Վասն զի՝ ով քաջ, զի ոչ էր արժան մարդոյն լինել աստուած, իբր թէ զամենայն ամբողջ համբարեալ յինքն, այլ կալ մնալ մարդ՝ կցորդութիւն ունելով մարդկանացու ազգին, որոյ սխալանք և յանցանք ազգակից են: Արդ պարտ էր սիրել գոնեա 'ի վերջէ հասանել լաւացն, իսկ առ այն՝ առ որ ոչն էին բնաւորեալ, ոչ բռնադատել հասանել: Նա բարիոք արդեօք խորհեցեալ էր յաղագս իւրեանց՝ և յաղագս իմաստասիրութեան, թէ 'ի քերթողութենէ 'ի բաց կացեալք՝ տրամաբանական բանս,

lut per exemplum indicabo, quatenus nempe quis poterit, sententiam confirmare secundum legem; siquidem vetat lex mysteria iis, qui inhabiles sunt ad mysterium, exponere.

Si quae de Vulcano fabulose referuntur, reducas in ignem; et quod de Junone, ad aëris naturam: quod autem de Mercurio, ad rationem; sicut etiam caetera, quae cuique propria sunt, ad ordinem juxta vestigium theologiae, tunc profecto poëtarum a te paulo ante accusatorum, laudator eris, utpote qui vere decenterque laudibus celebrarint divinitatem. Quod si regulas allegoriae aut sententiarum non admittas, eadem patieris cum pueris, qui ob imperitiam, Apellis praetermittentes picturas genuinas[1], adhaerent eis, quae in nummulo expressae sunt, imaginibus: admirantes quod est ridiculum, et quod condignum est omni acceptione, spernentes.

At quare Empedocles, Parmenides, Xenophanes, aemulatorque istorum chorus non sortiti sunt spiritum Musarum, quum theologiam exercuerunt? Ideo scilicet, o vir optime, quia non decebat hominem Deum esse, quasi omnia integre in se condentem, sed remanere hominem participem generis humani, cui error et deliquium cognata sunt. Oportebat itaque eos ultimo loco in veri investigatione contentos esse: ad illud autem, ad quod non erant ex natura destinati, minime satagere pervenire. Et melius quidem tum sibi, tum philosophiae consuluissent, si omissa poësi, disputationes, aut dialogicas con-

1 Տաստակաց, ut դաստակաց, opus erit *manus propriae:* ut autem դաստառակաց, pictura *in mappa*. Տախտակ demum, *tabula* est.

և կամ տրամաբանակս շարադասութիւնս թողուին ։ Որ ամենայնիւ մեծն պղատոնն էր արար ․ վասն զի տուեալ զինքն քերթողականութեան՝ կարի քան զյօժարութիւն կամացն պակասեալ լինէր ․ առ որս մանաւանդ գնա բնութիւնն կոչէր՝ շրջեալ յայնմանէ, Հարցմունս և պատասխանիս՝ զսոկրատականսն, և զևս հնագոյն զպիթագորեանն իմաստութիւն 'ի տրամաբանսն իւրում գրեաց ։ Որք գեղեցկութեան անուան սակս, և այլոյ բարձրաբանութեան՝ քերթողական մեծութեանն ոչինչ են ընդհատ ։ Բայց սակայն սաստէ և այնոցիկ՝ որ ոչ են քերթողականք բնութեամբ, յորժամ գրիցեն ինչ, ասելով ։

« Որ ոք առանց մոլութեան երաժշտաց 'ի քերթողական դուրս հասցէ, հաւանեալ, իբրու թէ արդեօք յարուեստէ բաւական քերթող լինել, անկատար ինքն, և քերթողութիւնն՝ 'ի մոլելոցն խանգարեցաւ » ։

Նոյնպէս եթէ ոք խռպոտ և պառուտ և արտանուագ ձայն ունելով՝ երգել ձեռնարկիցէ, կրկին աներաժշտութեան ցուցանելով տեսիլ, զայն որ 'ի գործիսն, և կարի յառաջագոյն զայն՝ որ 'ի բարսն է ։ Քանզի ծածկել զամօթալին արժան է՝ քան թէ 'ի մէջ բերել ։ Արդ մի զարմանար, թէ այր արդար ընթանալ ոչ գիտացեալ՝ յանիրաւ սուրհանդակէ յաղթեսցի ․ քանզի ոչ իմաստութեան գործ է արագութիւն, և ոչ որպէս դուքդ՝ քերթողութիւն ։

scriptiones secuti fuissent; quod omnino magnus Plato effecit. Nam licet deditus poësi, ab ea deficiebat plus quam vellet, ad ea potius ad quae natura ipsum vocabat, deflectens, interrogationes responsaque, Socratica, et adhuc vetustiorem Pythagoricam sapientiam in suis Dialogis descripsit; quae venustatis titulo, aut sublimitate sermonis minime distant a poëtica majestate. Imo increpat etiam illos, qui cum non sint natura ad poësin apti, poëtice scribant aliquid, dicens [1].

« Qui sine furore Musarum, ad poëticas fores accedit, persuasus, quasi vero ex arte sufficienter poëtam se evasurum, imperfectus ipse (comperitur,) et poësis a sobriis profecta longe inferior illa, quae a furentibus componitur ».

Similiter si quis raucisonus, horrisonus, ac melodiae expers praesumat canere, duplicis inelegantiae in musica praebet specimen, tum quoad instrumenta, tum maxime quoad mores: quoniam tegere turpia expedit potius, quam exponere [2]. Noli ergo mirari, si vir justus qui nescit currere, superetur ab injusto cursore; non enim sapientiae opus est velocitas; neque, ut a vobis putatur, poësis.

1 Plato in Phaedro. pag. 245. Ὃς δ' ἂν ἄνευ μανίας Μουσῶν ἐπὶ ποιητικὰς θύρας ἀφίκηται, πεισθεὶς ὡς ἄρα ἐκ τέχνης ἱκανῶς ποιητὴς ἐσόμενος, ἀτελὴς αὐτός τε καὶ ἡ ποίησις ὑπὸ τῆς τῶν μαινομένων ἡ τοῦ σωφρονοῦντος ἠφανίσθη.

2 Hinc B. Chosroes pater Sancti Gregorii Naricensis Saec. x. in comment. divini officii. Զգարշելին ծածկելն է բարւոք, քան թէ յայտնելն. Idem axioma passim occurrit et apud alios scriptores.

ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ:

Ներեցի և այլոցն յանձն առնուլ. մի՛ թէ և այս ոչ բարւոք է անհնարացեալ:

ALEXANDER.

Esto, caetera admittantur: at illud ne etiam haud bene inter impossibilia reputatum sit?

ՓԻԼՈՆ:

Ո՞ր:

PHILO.

Quidnam?

ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ:

Կամ ասել ծնանելի է աշխարհս, բընութիւնն առ հասարակ ամենեցուն է ծնանելի. քանզի նախ առաջին ոչինչ առաջացեալն բաժանումն տանի: Իսկ եթէ անլինելի է, ոչ նա ըստ նախախնամութեան, և ոչ այլ ինչ որ ՚ի նմանէ եղեալ՝ կատարեցաւ. իսկ կենդանեաց ազգք և տնկոց ինքնամանն: Վասն զի ծնունդք՝ տնկողաց հարկ է նմանութիւն բերել, և ոչ լինողքն:

Նախ առաջին, զիա՞րդ յոչնչէ ինչ լինիցի: Ապա՝ թէ ՚ի ժամանակէ իմիք՝ ոչ նախախնամութիւն եղեւ, արամազդ ոչ մշտնջենաւոր երևի: Ո՞րն զօր զի՞նչ աք կարծեսցէ անաստուածագոյն: Իսկ այլևս՝ եթէ լինելի գոլ բնութեանս դէպ եղև, արժան է զննել յաղագս ըստ նորայն քանակութեան. քանզի ընդէ՞ր ոչ նուազ և ոչ աւելի եղև: Նուազ իւիք ոչ ուրուք ընդ ոտս արկեալ առ այն, որոց վայելուչ էր լինել խառնուածք բնութեանն և մատակարարութեանն: Իսկ ընդէ՞ր չորս տարերս զայս միայն իբր հիմունս իմն ՚ի ներքոյ եդ. կամ սակաւուք կամ աւելեօք, այն որ զբոլորից մատակարարէր բնութիւն, ո՞չ կարէր զաշխարհս առնել:

ALEXANDER.

Aut natum dicere mundum oportet, quatenus communis omnium natura nata est: nihil enim aliud anterius suffert divisio proposita. Aut si natus non est, non ergo ille juxta Providentiam peractus fuit, neque aliud quidpiam in eo factum, sed animalium ac plantarum genera per se efficiuntur: quoniam nata plantatorum naturam praeseferant necesse est, non vero facta [1].

Et primum, quomodo ex nihilo aliquid fiet? Deinde si aliquando providentia non habeatur [2], jam Juppiter ipse non sempiternus apparebit; et quid erit quod magis atheismum redoleat? Praeterea si proprium est naturae ipsius τὸ esse factam, convenit explorare rationem quantitatis ejus: cur enim nec minor, nec major, facta fuerit? Quum nihil impedimento esset iis, quae si essent, decentius temperamentum naturae et dispensationis suae habuissent. Cur quatuor haec tantum elementa velut fundamenta existunt? Num per pauciora, vel ampliora dispensator ille naturae universorum non poterat mundum creare?

1 Vel junctim cum sequenti adverbio: *non primum facta*.

2 Neque enim habetur providentia, si mundus, aut natura non est. Locus tamen est obscurus in Arm. ita ut punctis mutatis, diversae elici possunt sententiae.

ՓԻԼՈՆ.

Վահ մեծ արդեօք, ո՞չ իրազեկագոյն խուզումն է մարդոյ միտք, և առ այսու քննօղ և վճռագոյն. տես որչափ 'ի վերայ ել, և շուրջ հայեցեալ տեսանէ զվերնայինն բնութիւնն զամենայն երկնի՝ խնդրել զանորակն և զանտեսակն, և զտեսակս զամենայն, և զամենայն որակութիւնս ընդունել կարացեալ: Այլ ով այդ, ոչ մնացից 'ի քէն՝ թէպէտ և ընթանաս. այլ մի ոգի զօրէն՝ որ կշռէն՝ ընթացայց առնուլ զյաղթանակն նախախնամութեան ասուեալ. զորս և յաղագս սոցա ունիմ խօսել:

Արդ մեկ դու ընդ իս յայց լիցուք, քանզի ամենայն է անծին և մշտնջենաւոր, որպէս այն որ քաջ իմաստասիրեցելոցն զեկուցանէ բան. որպէս գրեն 'ի միասին պարմենիդէս, եմպեդոկլէս, զենոն, կղէանթէս, այլ քաղուածք ա͞ծազանք իբր ճշմարիտք և տէրունի սուրբ ժողով: Իսկ յանեղ նիւթոյ զի՞նչ զարմանամք եթէ մասնաւորն ծնանի և ապականի. է ինչ որ նախախնամութեամբ ա͞յ, և է ինչ որ ըստ կարգի: Վասն զի և յայլոցն իւրաքանչիւր ոք յարուեստագիտացն նիւթ ծնանել ոչ ընտանեցաւ. իսկ զոր առնու, ձևէ, և արդէ, և զարուեստին հրամանս դնէ 'ի նմա: Ոչ պատկերագործդ ո՞չ տեսանես, զի պղինձ ոչ առնելով՝ պատկերս կազմէ. քանզի նոցա է արարիչ. իսկ պղինձ յերկրէ հանելով՝ մասն երկրի է: Վասն որոյ զայսօրինակ, ա͞ծ զառաջինն նիւթն ոչ ծնաւ մշտնջե-

PHILO.

Papae! nonne indagatrix curiosa est mens humana, atque ratiocinatrix? Viden', quantum elevata est? Ita ut circumspiciens contempletur supernam naturam totius caeli, quaerens quod careat qualitate et specie; et tamen species omnes, omnesque qualitates percipere sufficiens. Verum, o Sophe, non retro me relinques, quamquam curras; sed velut uno eodemque animo aequaliter curram, ut bravium de existentia Providentiae arripiam per ea, quae mihi dicenda restant de his.

Age, interim ponamus inter nos, universum ingenitum ac sempiternum, juxta illud quod suggerit sermo celeberrimorum philosophantium, sicut conscribunt Parmenides, Empedocles, Zeno, Cleanthes, aliique divi homines, ac velut verus quidam proprieque sacer coetus. Atqui ex ingenita materia, quid miramur, si pars aliqua generetur, aut corrumpatur, partim per Providentiam Dei, partim ob rerum ordinem? Namque et caeterorum artificum unusquisque materiem generare haud solet, sed quam sibi sumit, eam figurat formatque, et artis ordinem ei imponit. An non vides statuarium? Non enim ipsum aes creans, simulacra conficit. Istorum quidem ipse est factor; aes autem ex terra effossum pars est terrae. Quare juxta hujusmodi hypothesin [1], Deus materiam primam

1 Contra insanam hanc doctrinam antiquorum paganorum apposite praefigitur SS. Bibliis Arm. in praemissis ad Genesim, talis glossa: * Իսկ պատճառն ծննդոց գրոցս է այս. զի մոլորեալ մարդկան յայս, ոմանք ասացին՝ ոչ բնաւ գոլ ա͞ծ, և այլք զտարերս ա͞ծս ասացին. և զաշխարհս ոմանք ինքնեղ ասացին. և այլք զնիւթն մշտնջենաւոր և անսկզբնակից ա͞յ. ուստի առեալ, ասեն, ա͞յ՝ արար զաշխարհս. ուրացան և զնախախնամութիւն ա͞յ զաշխարհս՝ ասելով, թէ ըստ պատահման բերի ամենայն: Զայսպիսի մոլորութիւնս ուղղել կամելով՝ գրեաց (նախամարգարէն մովսէս) 'ի գիրս յայս, թէ եղական է աշխարհս և սկզբնաւոր. և թէ ա͞ծ արար զաշխարհս՝ ոչ 'ի հիւլէէ, այլ բանիւ յոչէից գոյացոյց զերկինս և զերկիր և զայլն ամենայն ||:

հաւոր. իսկ նիւթ 'ի պէտս առեալ՝ նովաւ զերկին և զերկիր և զկենդանեաց և զտնկոց տեսակս և զամենայն գործեր վերակացութբ̄ և խնամով, իբր ծննդոց՝ հարց, և արուեստագիտացն՝ արարելոցն, յիրաւի նմա նուիրեալ դնէ: Նայց արգելու և ոչինչ գոլ յառաջախնամութիւն. զի թէպէտ և հանդերձ նիւթով աշխարհս անլինելի իցէ:

Ընդէ՞ր: Զի ոչ միայն առնել և ածել 'ի նիւթ՝ առանձնաւորութիւն է նախախնամութեանն, այլ և պինդ ունել և մատակարարել զէն: Այլ նմանի 'ի վերայ ակնածուացն իշխանութե առ ղակեդեմոնացիս, քանզի սա զքաղաքավարութիւնս ոչ կարգեաց: Այլ վասն զի մեծ և հզօր, շուրջ գալով յականէ, ոչ ինչ մասն թողեալ նորա անզննին: Արդ այսպէս զմեծաքաղաքս զայս ած իբրու ակնածու միշտ յականէ: Այլ զկարգն յորում իւրաքանչիւր ոք կարգեալ է, իբրև զամենաբարի և զգովելի ընդունի, և պինդ պահէ, խնամ տանելով սոցա: Արդ բաւական են այսքիկ:

Իսկ յաղագս քանակի նիւթոյն տեսակքեղէն, արդարև այս ասելի է: Կշռեաց ած առ աշխարհիս լինելութիւն նիւթ բաւական. զի մի պակասեսցէ, և մի աւ

non generavit sempiterne, sed materia ad usum sumpta, per eam caelum et terram, atque species animalium plantarumque, et omnia fecit, inspectione ac cura habita, tamquam pater proli suae, et artifex operi suo officium praestans: quod nihilominus nullatenus impedit esse providentiam: etsi unà cum materia mundus ingenitus supponatur.

Quomodo? Quia non solum creare et edere materiam, proprium est Providentiae, verum etiam conservare moderarique, quod est factum. Qua in re similis censeretur Ephoro apud Lacedaemones; is enim non constituit politiam: quoniam vero magnus est et potens, perlustranti oculo proprio, nulla pars ejus (politiae) relinquitur sine inquisitione. Similiter itaque magnam hanc civitatem Deus tamquam Ephorus semper oculatim intuetur, et ordinem in quo unusquisque constitutus sit, velut optimum laudabilemque admittit et conservat, curam adhibens eis. Haec ergo satis.

De quantitate [1] autem materiae specialiter factae, id profecto dicendum est. Expendit Deus ad mundi facturam materiam sufficientem, nihil ut deesset,

*Περὶ δὲ τοῦ ποσοῦ τῆς οὐσίας, εἰ δὴ γέγονεν ὄντως ἐκεῖνο λεκτέον. ἐστοχάσατο πρὸς τὴν τοῦ κόσμου γένεσιν ὁ Θεὸς αὐταρκεστάτης ὕλης,*

h. e. « Ratio autem libri Geneseos est, quia hominum a Deo aberrantium nonnulli dixerunt nullatenus Deum esse; alii elementa deos dictitarunt: quidam mundum a seipso exstitisse asseruere; alii vero materiam sempiternam Deoque aequalem, sicut carentem principio; unde sumens, inquiunt, Deus mundum fecit. Ad haec negarunt, quod Deus per providentiam procuret mundum, dicentes omnia ferri per accidens. Hujusmodi ergo errores corrigere volens scripsit (Moyses protopropheta) in hoc libro, quod mundus est creatura facta, et habens principium; atque quod Deus fecit mundum non ex hyle (materia), sed verbo ex nihilo creavit caelum et terram cum caeteris universis ».

1 Huc pertinet alterum Gr. fragmentum apud Eusebium Praep. Evang. Lib. VII. c. XXI. p. 336. ubi dixit eclogarius: Καὶ ὁ Ἑβραῖος δὲ Φίλων ἐν τῷ περὶ τῆς προνοίας, ταῦτα περὶ τῆς ὕλης διέξεισι. *Hebraeus autem ille Philo in libro de Providentia, haec de materia refert*. ubi sub initio, pro τῆς οὐσίας, εἰ δὴ, Arm. legit, τῆς ὕλης εἶδος.

ռաւելեալ. քանզի անտեղի յիմարութեան էր. զի եթէ մասնաւոր արուեստագէտքն՝ յորժամ ինչ առնիցեն, և մանաւանդ յայնցանէ որ բազմապատիկքն են, զնիւթն զբաւականագոյնն կշռեն. իսկ այն որ թիւս, և չափս, և զայնոսիկ որ 'ի սոսա զուգաւորութիւնքն են՝ նախ եգիտ, ոչինչ հոգալ ընդ բաւականն: Եւ տացից համարձակութեամբ. զի ոչ դուզնաքեայ և ոչ աւելւոյ նիւթոյ պէտք էին աշխարհի առ կազմութիւն. ապա եթէ ոչ, ոչ էր եղեալն կատարեալ, և ոչ ամենայն մասամբքն ամբողջ՝ գեղեցկապէս արարեալ կատարեցաւ: Քանզի ամենիմաստի է զարուեստն իւր՝ յառաջ քան սկսանել զիմեքէ կազմածէ՝ զբաւականն գիտել նիւթ:

Քանզի մարդն՝ թէպէտ և յայլոցն համաճարոյ արուեստիւ առաւելեալ է, ոչ կարացեալ համօրէն ձողոպրել յազգակից մահկանացուաց մոլար վրիպանաց՝ խաբեսցի թերևս 'ի քանակութիւն նիւթոյն. իբրու թէ յորժամ արուեստաւ ինչ գործիցէ, է երբէք զի նուազ է՝ յաւելուլ, և է յորժամ աւելի ինչ՝ 'ի բաց հատանել: Իսկ նա՝ իբրու զի աղբիւր է համաճարոյ, նուազ կամ յաւելեալ ոչինչ էր առարկանել: Իբրու զի չափովք բաւականութեան վարէր 'ի ստուգութիւն առաւել քան զբնութիւն, 'ի գործ անկելոց ամենեցուն գովութեամբք: Իսկ

neque redundasset (vel amplius esset): aliàs absurdae amentiae esset, particulares artifices quum aliquid faciant, praesertim ex iis, quae multum pretiosa sint, materiam omnino sufficientem expendere: illum vero qui numeros et mensuras, atque aequalitates in illis occurrentes primus adinvenit, nihil curasse de sufficientia. Dicam autem fidenter, quod nec minoris, nec amplioris materiae opus erat ad mundi fabricationem; alioquin factum ipsum non fuisset perfectum, neque cunctis partibus integrum, pulcherrimum opus perficeretur. Sapientissimi enim est in arte propria, antequam incipiat aliquod opificium, sufficientem nosse materiam.

Verum enim vero homo etsi caeteris praestet intelligentia ingeniosa, cum tamen nequeat omnino se eximere cognato mortalibus errore, deluditur fortasse circa quantitatem materiae: ita ut cum per artem aliquid facit, nunc quod deest, superaddat, nunc autem quod redundat, detrahat. At ille, qui fons est intelligentiae, nihil minus vel amplius apponit, mensuris nimirum sufficientiae usus, diligentia naturam ipsam superante, et in opus insumptis omnibus quam laudabiliter. Qui vero velit aliter nugari, nunquam finem faciet, et cun-

ὡς μήτ' ἐνδέοι, μήθ' ὑπερβάλλοι. καὶ γὰρ ἄτοπον ἦν, τοῖς μὲν κατὰ μέρος τεχνίταις, ὁπότε τι δημιουργοῖεν, καὶ μάλιστα τῶν πολυτελῶν, τὸ ἐν ὕλαις αὔταρκες σταθμήσασθαι· τὸν δ' ἀριθμοὺς, καὶ μέτρα, καὶ τὰς ἐν τούτοις ἰσότητας ἀνευρηκότα, μὴ φροντίσαι τοῦ ἱκανοῦ. Λέξω δὴ μετὰ παῤῥησίας, ὅτι οὔτ' ἐλάττονος, οὔτε πλείονος οὐσίας ἔδει τῷ κόσμῳ πρὸς κατασκευήν. ἐπεὶ οὐκ ἂν ἐγεγένητο τέλειος, οὐδ' ἐν πᾶσι τοῖς μέρεσιν ὁλόκληρος, εὖ δεδημιουργημένος, ἐκ τελείας οὐσίας ἀποτετέλεσται. πανσόφου γὰρ τὴν τέχνην ἴδιον, πρὶν ἄρξασθαί τινος κατασκευῆς, τὴν ἱκανὴν ἰδεῖν ὕλην. Ἄνθρωπος μὲν οὖν κἂν εἰ τῶν ἄλλων τὴν ἐπιστήμην διαφέροι, μὴ δυνάμενος κατὰ τὸ παντελὲς ἐκφυγεῖν τὴν συγγενῆ τῶν θνητῶν πλάνην, ἀπατῷτο ἂν ἴσως περὶ τὴν ποσότητα τῆς ὕλης, ὁπότε τεχνιτεύοι· τοτὲ μὲν, ὡς ἔλαττον προστιθέναι, τοτὲ δὲ, ὡς περιττῆς,



Digitized by Google

որք կամին այլազգ շատախօսել, ոչ երբեք ժամանեսցէ, և զամենեցունն գործ արուեստագիտացն պատճառս դնելով. իբրու թէ լաւին կազմածի հասեալք՝ յաւելուածովք իմն նշանակեսցէ զայնասիկ որ 'ի նիւթսն։ Իմաստակի իմաստակութեան գործ է բանագիւտ լինել. իսկ իմաստութեան՝ զիւրաքանչիւրսն քննել, որք 'ի բնութեան, պարկեշտ պատկառանօք և յարմարական ընդունելութեամբ։

ctorum opera artificum accusabit; perinde ac si quis opificium nactus bonum, velit notare quidquam, ut superfluum de iis quae in materiis discernuntur. Sophismatis enim opus est verba excogitare; sapientiae vero singula examinare, quae in natura occurrunt[1], honesta modestia, et congrua perceptione (aut acceptatione.)

## ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ։

## ALEXANDER.

Երևիս սաստել ինձ ով Փիլոն, իբրու թէ յաղագս այսչափ մեծամեծաց զայրացելոյ։ Բայց ընտաւորեալ եմ ոչ 'ի մարդկան հայել փառս, որպէս ասէն Պղատոն, այլ զերևելիս ասել առանց ողոքանաց։ Վասն զի և այժմ ոչինչ նուազ հնչէր իմն ինձ մօտ հակառակ նախախնամութեան ընդդիմամարտութիւն. զոր լռել լինել ոչ կարացից։ Քանզի ահա հաս մինչ 'ի լեզուս և 'ի բերան. զի ոգի առեալ 'ի դուրս բերել վասն այսորիկ։

Videris arguere me, o Philo, tamquam indigne ferentem haec et tanta: ego tamen haud soleo hominum rationem habere, ut dicit Plato, sed quae videntur mihi perspicua, dicere sine assentatione. Quare nunc etiam quoniam me valde increpitat animadversio contra providentiam, tacere omnino non possum: ecce enim pervenit usque in linguam, et os, ut respirando proferam sequentia.

Անբաւն ունայն՝ նորագոյնս ասեն ոմանք, է, և ըստ մտաց չափ ելեալ. արդ յայտ է՝ եթէ ոչ է եղեալ ըստ նախախնամութեան, որպէս և ոչ տեղի։ Քանզի է, որպէս և որք ժողովելով ասեն, ունայն, տեղի՝ նոր 'ի մարմնոյ ըմբռնելեալ։ Ապա թէ՝ ոչ տեղի, և ոչ երեսութիւն, ապա ուրեմն և ոչ ձև աշխարհիս ըստ նախախնամութեան 'ի ստոյգ գունդն

Immensum vacuum, ut novissime nonnulli dicunt, datur, idque excedens mentem; patet autem, quod non est factum secundum Providentiam, sicut neque locus. Est enim, quemadmodum Syllogistae dicunt, vacuum, locus mox a corpore occupandus. Atqui si nec locus, neque superficies, ergo neque figura mundi secundum providentiam in verum

ἀφαιρεῖν. ὁ δὲ πηγή τις ὢν ἐπιστημῶν, ἐνδέον ἢ περιττεῦον οὐδὲν ἔμελλεν ὑποβάλλεσθαι, μέτροις ἅτε χρώμενος εἰς ἀκρίβειαν ὑπερφυῶς πεπονημένοις ἅπασιν ἐπαινετοῖς. Ὁ δὲ βουλόμενος ἄλλως ὑθλεῖν, οὐκ ἂν φθάνοι, καὶ τὰ πάντων ἔργα τῶν τεχνιτῶν αἴτια τιθέμενος, ὡς ἄμεινον τῆς κατασκευῆς ἐπιλαχόντα προσθέσει τινὸς ἢ μειώσει τῶν ἐν ὕλαις. ἀλλὰ γὰρ σοφιστείας μὲν ἔργον εὑρεσιλογεῖν, σοφίας δὲ, ἕκαστα διερευνᾶν τῶν ἐν τῇ φύσει....

1 Hic explicit fragm. Gr. praesens.

յղկեալ է։ Արդ զհետ սորա գայ՝ և այլն ամենայն առանց վերակացութեան եղեալ, և առանց այցելութեան գոլ։ Արդ աւելայն ժամանակ անբաւ է, ոչ ասասցի յիրաւի նախախնամութեամբն այ լինել։ Ապա եթէ այդպէս է, և ոչ ժամանակին հատուածք, աւուրք, և գիշերք, և ամիսք ևս, և տարիք, և բոլորն շրջագայութիւն։

Արդ որովհետև միանգամայն և յանմարմնոցն ելաք բան, և ոչ զտրամաբանականութեանն (կամ տրամաբանութեան) թողլի է զհարցուածս։ Քանզի զհարցուածս զայս, զասացելոցն ինքնակատարից անուանս, հոլովս, և շաղկապս, և որ ինչ միանգամ նմանօրինակ է, նախախնամութեամբ լինել ասել անհնարին խելայեղութիւն է, առանց առհասարակ զամենայն զանմարմնոցն զնիւթ՝ անլինելի առնուլ մեծաւ։ Արդ զհետ երթայ՝ և ոչ տեսիլքն արուեստից, և ոչ արուեստքն և հանճարք յայ լինել։ Արդ՝ եթէ ոչ ունայն, ոչ ժամանակ, և ոչ տեղի, ոչ եզերք, ոչ ձևք, և ոչ հատուածք, և որ ինչ միանգամ 'ի ձայնիցն նշանակեալք սովորութիւն է կոչել, ասել՝ աստուածային եղև հանճարով, զի՞նչ ինչ յայլոցն արժան է ասել։

globum polita est. Sequitur ergo etiam caetera omnia sine praesidentia [1], facta fuisse, et visitatione [2] carere. Quin imo et tempus est infinitum; neque ergo jure dicitur per Providentiam Dei esse. Quod si ita se habet, ergo neque temporis sectiones, dies et noctes, mensesque, atque anni, et tota circumactio.

Quandoquidem vero ad incorporeorum quoque ascendimus rationem, nec ea praetermittenda sunt, unde dialecticae quaestiones et ideae constant: quoniam quaestiones istas de absolutis nominatis, speciesque, casus et conjunctiones, et quidquid consimile sit, per providentiam fieri asserere, summa est amentia; nisi prius constituatur, omnium omnino incorporeorum materiam vi naturae suae vacatam esse oportere: unde sequitur neque species artium, neque artes ingeniaque ex Deo esse. Si ergo nec vacuum, nec tempus, nec termini, nec figurae, neque sectiones, aut quaecumque per voces significata soleant appellari, queant dici, divino ingenio facta fuisse, quid aliud de residuis liceat dicere?

## ՓԻԼՈՆ։

Լուր ով զարմանալի. քանզի հարցողին պատասխանի առնել բարիոք է. և որում և ոչ ոք ստէպ ստէպ հարցանէ, նմա տուցանել աննախանձ առատութեամբ վայելուչ է՝ վարդապետութիւն։ Քանզի նորոգ, որպէս ասես, այ ոչ գործէր տեղի, վասն զի և մարմին առնէր։ Բայց ուսցիս, զոր ասեմ, հաւաստագոյն՝ 'ի քաղաքս հայելով. քանզի 'ի սոցանէ իւրաքանչիւրոք հաստեաց յառաջին իշխանացն. Թեսևս՝ զաթէնս յատտիկէ, և

## PHILO.

Audi, o vir admirabilis; interroganti enim respondere expedit: imo, et illum quoque quem nemo passim interrogat, hunc decet adhibere liberaliter et sine invidia doctrinam. Dicis, Deum locum novum non condere, ideoque neque corpus creasse. Disce tamen, quod dico tibi, certius, civitates aspiciendo; istas enim singuli principes antiqui condidere: Theseus Athenas in Attica, et Laconica (regione?) et Alexander Macedo

1 h. e. Sine mente praeside, vel modum statuente.

2 id est: Providentiae cura.

՚յղակոնիկէ. և մակեդոնացի աղեքսանդրոս զանուանի աղեքսանդրիա՝ առ եգիպտոսի։ Այլ սակայն և ոչ Թեսևս զատտիկէ, և ոչ զլակոնիկէն, և ոչ աղեքսանդրոս զեգիպտոս, և կամ զլիբիէ. այլ գործ բնութեան 'ի պատրաստի գտեալ զգաւառսն, 'ի բաց զատուցեալ վայրս ոմանս, շուրջ փակեցին պարիսպս, և զայլ ևս շինուածս զյատուկս, և զժողովրդական կազմեալ, անուանիս ցուցին զքաղաքսն։ Այսպէս և ած, նորոգ ինչ ոչ գործեցեալ, 'ի նորում զմեծաքաղաքս զաշխարհս առնէր, ծնուցանելով ընդ նմա միանգամայն և տեղի։ Քանզի 'ի մարմնոյն լրութիւն, ունայնին, որպէս և դու արժանի առնէիր վարկիլ, ոչինչ է՝ որ ոչ է տեղի։ Յայտնապէս և յաղագս ունայնոյն և տեղւոյն այսչափ բաւական յարդեան իրս։

Իսկ ձև աշխարհիս՝ որպէս և ինքն իսկ աշխարհս, ով սիրելութիւն, եղև նախախնամութեամբ գնդաձև։ Նախ առաջին՝ վասն զի քան զամենայն ձև երագաշարժագոյն է. և ապա՝ զի էր հարկաւորագոյն, զի մի՛ թուլացեալ 'ի վայր բերցի առ անբաւ ունայնութիւն, մասունքն ամենայն խոնարհելով 'ի միջոցն նորա։ Քանզի միայն այսպէս համդերձեալ էր կայանալ, 'ի միմեանս բերելով առ միջոցն զոյգ բոլորականն։ Իսկ գովողքն հրաշապէս 'ի պղատոնայ 'ի տիմէոսի՝ բոլորակագոյն ձևն, առ որ եղեն պիտանացու, միանգամայն ստորագրելով՝ իբրու թէ ոչ միոյ իմիք ոչ է կարօտեալ յաւելուածի այնոցիկ որ 'ի գովութենէ։

Այլ վասն զի և զժամանակն զայն, որ առանց վերակացուի և առանց ակնածուի զկազմութիւնն ածնուիր 'ի մէջ, քաջ գիտել պարտ է, զի զանբաւն և զանմարմին ժամանակն ած ոչ առնէր. այլ աւուրս, և ամիս, և տարիս, արեգակամբ և լուսնիւ վարեցեալ 'ի չափս յայս, և այլովք ևս մոլորականցն շրջագայութեամբ, կենդանեաց սակս և պտու-

nominatissimam Alexandriam juxta Aegyptum. Attamen nec Theseus Atticam Laconicamque, neque Alexander Aegyptum, vel Libyam (formarunt,) sed opus naturae praeparatum reperientes, hoc est eas regiones, certa quaedam spatia circumdederunt moenibus, caeteraque privata et publica aedificia construentes, nominatas ediderunt urbes. Similiter et Deus, quin novum quidpiam elaborasset, de novo magnam istam urbem mundum creavit, ac una cum eo locum etiam oriri fecit. Quoniam plenitudine corporis data, spatii, sicut et tu existimare aequum duxisti, nulla pars erit, quae non sit locus. Evidenter itaque de vacuo locoque haec interim satis dicta sint.

Figura autem mundi, sicut et mundus ipse, amice mi, per providentiam globi in formam facta fuit. Primum, quia omni figura velocius mobilis est; et deinde magis necessaria, ne forte remissus (mundus) deorsum ferretur ad immensam vacuitatem, cunctis partibus in suum medium inclinantibus: sic enim solummodo consistentiam habiturus erat, erga se invicem ad medium tendente aequali orbe (vel sphaera.) Occurrunt autem in Timaeo Platonis, qui mirifice laudent figuram perfecte sphaericam cum sua utilitate, atque commendent, ita ut nullo praeterea indigeat laudis additamento.

Quod vero attinet ad tempus illud confictum sine praeposito inspectore, quod adducebas in medium, bene advertendum est, quod infinitum, incorporeumque tempus Deus minime creavit, sed dies mensesque annosque, sole et luna usus in hac mensura, atque reliquorum planetarum periodis propter animalia, generationemque fructuum;

զոցն ծննդեան, զոր անհնար է առանց տարեւոր ժամանակացն բաղկանալ: Խակձն (՚Ի ոչն) կարգեալ ՚ի մի վայր գոլութիւնք, և մեկնութիւնք արեգականն ծնանել բնաւորեցան: Արեգակն և առհասարակ ամենայն երկին և աշխարհ, որպէս և ահա ցուցեալ է՝ Նախախնամութեամբ մատակարարին:

Որդ այսուհետև կարծեմ զասացելոցն զոր ՚ի տրամախօսութենէ առնուիր ՚ի մէջ, ոչ իբրու զարժանիս ՚ի վարկէ և զայլսն զասելիսն զԱյ կարգելով ՚ի տեսակս, և ոգւոց՝ որք մտանգամն ուսմանց են հռչակեալ՝ արժանի առնելով: Նայց զի՞նչ դէպ եղև գոլ տեսակ՝ թէ ոչ ընդհանրի իմն հասումն ըմբռնումն. իսկ մտաց ընդհանուր զի՞նչ այլ՝ զոր ոչ Ած յառաջագոյն գործեաց՝ միտք սերմանեալ քաջաբուսութիւն, որ շարժել կարի քաջ ՚ի ճահ, հանդիպողութեամբ ՚ի ձեռն նշանացս, և յառաջագոյն ըմբռնեցելոց զիւրաքանչիւր ոք ըստ բնութեանցն զհետ վարեալ. զայնս որ առանց գոչման բանի հաստատագոյն գործովք ճշմարտութեան հաստատեալք ցոյցս առնուլ:

quae nequeunt sine annuis tempestatibus consistere. Ad hoc dirigi cumulatim [1], ortus et occasus solis consueverunt: quod nempe sol, et totum universim caelum, ac mundus, quemadmodum ecce demonstratum fuit, per Providentiam regantur,

Post haec, ut mihi videtur, de rebus dialecticis sermonem inducebas, quasi vero non sint Deo digna juxta sententiam (tuam) tum reliqua, tum dicta de speciebus; neque iis qui in studio claruere, conveniant. Quid tamen, quaeso, sit umquam species, nisi universalis alicujus comprehensio? Et intellectui quid occurrat universale aliud, quod Deus prius non fecerit, menti inserens foecunditatem, quae optime est apta ad admovendum sibi singula, occurrentibus signis vel antea conceptis, pro naturis inquirendis; ita ut ea, quae sine clamore sermonis firmiore facto veritatis constant, pro certo argumento possint sumi?

ԱՂԵՔՍԱՆԴՐՈՍ:

Դիւրագոյն էր, քա՛ջ գիտեա, առ իւրաքանչիւր ոք ընդդիմանալ յասացելոցն. այլ զի մի բան ընդ բանի յեռլով յաղագս նոցունց՝ երկայնաբանել թուեցիմք, առ այնս որ յետ այսոցիկն՝ անցցուք ՚ի պարտս: Քանզի պահանջեսցուք յառաջամարտկացն նախապատուութեան զձեզ զպատճառս:

Յաղագս որո՞ց իբրաց ՚ի բա՛ց ՚ի միջոցի ամենայնի հաստատեալ կառոյց զերկիր, և ՚ի վերայ իւր ունել զծովս: Եւ երկրորդ տուեալ երկրի վայր, զօդ ՚ի վերայ ջուրց ՚ի վեր ամբարձեալ՝ ՚ի վեր կոյս

ALEXANDER.

Facile quidem erat, (quod scias velim,) singulis resistere dictis; ne tamen verbum verbo annectentes iisdem de rebus, prolixiores in sermone videamur, ad sequentia transferamur. Exigamus nimirum antesignanorum a te rationes.

Quam ob rem vasto in medio universorum conditam erexit terram, supra se habentem maria: et concedens terrae spatium secundum, aërem super aquas elevans, eum sursum delatum usque ad

1 Dubia est lectio in Arm. vocibus, Խակձն ... գոլութիւնք:

բարձեալ մինչ յարփին ձգտեաց ։ Իսկ զոր խնդրէք 'ի մէնջ լսել՝ առ ձեռն պատրաստ է բան. հարկաւորութեամբ իմն բնականին թեթեւագոյնքն 'ի ծանրագունիցն 'ի վեր կոյս մղեալ դէպ եղեւ լինել ։ Այլ աներեւութիցն հաւաստի հաւատ՝ յայտնիքս. սափոր թէ առեալ ոք ջրով լի, իւղ 'ի վերայ հեղուլ եւ աւազ կամեսցի, աւազն 'ի վայր գնասցէ, իսկ ձէթն 'ի վերայ կայ մնայ, եւ ջուրն զմիջասահմանն վայրն կալցի, վասն թեթեւագոյն գոլոյ քան զհողեղէն նիւթն՝ յորմէ 'ի վեր կոյս մղեալ ոստուցանի. իսկ քան զձէթն ծանրագոյն էր, թեթեւին ի ներքոյ տարածիլ բռնադատեալ էր ։ Հաւասար նմին՝ սակայն եւ մասունքն աշխարհիս կրել երեւին, որպէս ասէ Եմպեդոկլէս ։ Վասնզի իբրեւ մեկնեալ յարփւոյն թռուցեալ էր հողմոյ եւ հրոյ, եւ էր որ եղեւ՝ երկնին լայն մեծ 'ի վերայ շուրջ պատեալ. իսկ հուր սակաւ մի 'ի յերկնէ 'ի ներքս մնացեալ, եւ սա յարեգական ճառագայթս աճեցաւ ։ 'ի մի վայր ընթացեալ եւ հոծեալ հարկիւ իմն երկիր երեւեալ 'ի մէջ կայր մնայր ։ Այլ շուրջ զնովաւ ամենայն ուստեք՝ քանզի իբրու փոքրագոյն էր, յուզի անխլիրտ արփի ։ Այլ ապա սմա կալոյ մնալոյ պատճառք ա՜ծ, եւ ոչ շրջանակօք 'ի միմեանց վերայ բազմօք եղեալ ։ Որոյ շրջաբերութիւնքն բոլորակօք ճախարակեցին զձեւ ։ Վասնզի շուրջ զնովաւ արգելեալ փակեցաւ լամբար իմն շրջանակ սքանչելի. զի մեծ եւ բազում տեսլեան զօրութիւն, վասն որոյ ոչ յայսկոյս եւ ոչ յայնկոյս անկեալ սորա ։

aetherem extendit? Quod vero a nobis (fortasse) audire vultis, praesto est responsum; necessitate videlicet quadam naturae leviora a gravioribus sursum pelli contigit. Occultis autem certam faciunt fidem haec, quae sunt manifesta. Situlam si quis aqua plenam sumens, oleum ei superfundere arenamque velit, arena inferius abit; oleum autem supra perstat, aqua vero medium obtinet spatium. Etenim aqua eo quod levior sit terrena materia, sursum acta resilit: quoniam vero gravior oleo est, sub leviori cogitur subsidere. Eodem modo et mundi partes affici videntur, ut dicit Empedocles. Discedentibus enim ab aethere vento et igne, atque volantibus, tum caelo latissime expanso, ac desuper circumducto, ignis qui paulo inferior caelo manserat, ipse quoque in radios solis adauctus est: terra vero concurrens in unum spatium, et necessario condensata apparens, in medio stat. Porro circa eam undique, quoniam nimis levior erat, volvitur absque dimotione aether. Quietis autem exinde ratio datur per Deum, non vero per sphaeras multas super se invicem positas, quarum circumrotationes poliverunt figuram [1]. Quia circa eam coarctata fuit sphaera ignis mirabilis; magnae enim et multiplicis theoriae [2] vim habet: ideo nec hunc, nec illuc cadit ista.

Այլ ապա յաղագս ծովուն պատճառս ասելով՝ ասէ, պնդեցելոյ այնր որ ըմբռնեցեալ յանկութիւնն էր սափչին, մանաւանդ կարկուտքն 'ի վեր մղեալք աղտաղտուկ ջուր ։ Վասնզի որ միանգամ յերկրի խոնաւութիւն է՝ 'ի նուաստ եւ

Deinde ratiocinatus de mari, ait: Concreta est extremitas orae, maxime in grandinis morem resiliente aqua limosa: quae enim in terra humiditas passim est, in demissis depressisque ejus locis amat frequenti ventorum impulsu impelli, flu-

1 Id est, in speciem sphaerae mundum conglobavere. 2 Vel speciei, formae.

'ի հովտագոյն տեղիսն նորա սիրեաց՝ 'ի միմեանց վերայ ստէպ ստէպ հողմոցն շրջանակօք զօրէն կապոց իմն հզօրագունից ձնշեցեալ ։ Քանզի անտեղի է ասել ըստ նախախնամութեան այսչափ բազմութեան ջուրց գոլ՝ որ ոչ ըմպին ։ Քանզի ծովք ոչ սակաւք են 'ի ներքս արգելեալ՝ քան զհերակլեան զարձանսն. իսկ զմեծ ծովուն տարածեցելոյ արտաքս քան զօրէն բնութեանն հարկի ։ Որ յերկրէ ծորեալ խոնաւութիւնն՝ ջուր եղև. նոյնօրինակ և օդ 'ի ջրոյ և յերկրէ 'ի վեր գոլոշի, որպէս 'ի բաղանիս սովորեալ է լինել. քանզի անօսրեալ ջերմութեամբ ջրոյ, ըստ առ 'ի միմեանս տարերցն հարկաւոր փոփոխմանն ։

ctu uno alterum sustinente more nexuum quorumdam fortissimorum. Absurdum autem est dicere, juxta providentiam esse tantam multitudinem aquarum, quae minime bibuntur. Quandoquidem maria sunt non pauca inclusa intra Herculeas columnas: magnum autem mare extenditur praeter legem naturae debitam. Itaque quae ex terra defluit humiditas, aqua est facta: similiter et aër vapor exhalatus ab aqua terraque, sicut in balneis solet esse, ubi aqua extenuatur per calorem, secundum necessariam elementorum ad se invicem commutationem.

## ՓԻԼՈՆ.

Բարիոք զբանսդ գումարեսցես ա՛ղեքսանդրէ, որպէս որք յապաւեն զծառս մշակք դարմանօք, եթէ մասն է պտուղ տնկոյն, և որք առնուն զնա 'ի պէտս՝ օգտակար է ։ Քննեա՛, 'ի ծանրագունիցն ասես 'ի վեր կայս ձնշեալ թեթևագունին ։ Քանզի ոչ եթէ ամենայն, ով քաջ, մարմին ունին ծանրութիւն, զայն ինչ՝ որ ամենայնիւ անծանր եղև բնականին ասել՝ ըստ առ ծանր հակառակադրութեան ։ Վասն զի մեծ զօրութիւն ընկալաւ ընդդիմացն բաղկացութիւն, յորոց աշխարհս արարեալ է ։ Այլ ընդունայն թերևս է այն, որ յաղագս ծանուն և թեթևին է խնդիր, յաւելուածս առնել արդեան այցելութեան ։ Բայց սակայն շատ է այսչափ ասել, զի օդ և հուր բնական ունելով զվերին շարժումն անկցորդ ծանրութեան, ոչ յերկրէ և ոչ 'ի ջրոյ 'ի վեր ձնշին ։ Այլ եղև տարերցն տարածումն նախախնամութեամբ արարչին և հօր ։ Այլ երկիր հասեալ ընկալաւ զմիջին վայրն ։ Օ 'ի նախ առաջին, զի մի 'ի բաց սողոսկեալ ուրեք 'ի կիտէն արտաքս բերցի. զի կայան

## PHILO.

Adverte, ut optime verba tua colligas, Alexander, sicut qui amputant arbores agricolae accurate; quia fructus pars est plantae, et qui rite utuntur eo, proficiunt. Perpende, quod dicis, a gravioribus sursum agi leviora. Quoniam non omne, o vir optime, corpus pondere gaudet, ita ut quaedam omnino non gravia dici apud Physicum expediat, velut opposita gravibus: magnam enim vim habet contrariorum compositio, ex quibus mundus est factus. Inane utique erit quaestioni de gravi levique aliquid addere in praesenti inquisitione, sed sufficiet tantum dicere, quod aër et ignis naturaliter habentes motum in sursum absque gravitate, nec a terra, neque ab aqua sursum premuntur. Fuit autem elementorum extensio per providentiam opus Creatoris Patrisque. Et terra occupavit medium, primum quidem, ne abrepta aliquatenus a centro dimoveatur: nam ejus nisus ac statio in centrum tendit; iterum autem, ut ita circumcirca habitetur: in quantum enim

առ 'ի կենտն նորա թաւալումն է: Նաւ ապա՝ որպէս զի շուրջ բնակիցն. քանզի մինչդեռ կայ ուղիղ՝ ամենեքեան 'ի վերայ նորա կացեալ լինին, և թաւալելով 'ի մէջն: Ընդ որում ցուցանի և այն՝ որ յաղագս ձևոյն է, զի նախախնամութեամբ եղև գնդաձև. քանզի զայլ զասացեալն շուրջ զբնակութիւն ոչ ընդունի, որպէս յայնս՝ որ 'ի ձևսն է, և 'ի բնակութիւնս առանձինն իմաստասիրակեալ լինի: Քանզի ոչինչ անպատճառ լինել տացի և 'ի մէնջ. այլ ոչ սակայն վասն այսորիկ արժան է՝ որ ոչ միաբանէ ընդ ճշմարտութեանն՝ խնդրել պատճառս, այլ որ յար են:

perstat, recte omnia super eam stant, cum et ipsa in centrum ferantur. Quo probatur et figuram ejus per Providentiam factam fuisse globosam; quia jam dictam circumhabitationem non patitur alia figura, quod patet ex iis quae Philosophice considerantur de figuris habitationibusque: nihil enim sine ratione esse conceditur a nobis: at non proinde licebit quaerere rationem, quae non concordet cum veritate, sed eas quae congruentes comperiantur.

Քանզի նման են, որպէս թէ ոք 'ի կրթարան մտեալ, և գունդս, և զսնեղէն գնդսն տեսեալ, զոր 'ի պէտս սպասու մանկտւոյ վարժապետն պատրաստեաց: Նաւ ասեմ, այն՝ տեսակ նախախնամութեան արուեստագիտին լինել: Վասն որոյ զգունդսն յաղագս թեթևութեան ձևոյ՝ իբրու զի դիւրաշարժք են, դէպ եղև առնել, 'ի ճահ և 'ի դէպ ունել առ 'ի կրթութիւն մանկտւոյն: Իսկ զսնեղէն գնդսն վասն շրջանակութեան առ 'ի դիւր քերել: Քանզի ուսուցանէ ոք 'ի մէջ անցեալ, թէ ոչ ինքնէակ բնութեամբ, այլ արուեստիւ և խնամով արարչացն առ 'ի պիտանացուն լինել կատարած, որ հաստուցին, այսոքիկ եղեն: Վասն որոյ մի ոք՝ որ բարի խոկհեցի, հայելով յաշխարհիս մասունս և որք 'ի սոսա զանազանութիւնք են, բնական հարկաւորութիւն իւրաքանչիւր ումեք 'ի նոցանէ բաղկացութեան պատճառս դիցէ. բայց զիշխանն զարուեստագէտն ընդ միտ ածելով գովեսցէ վասն իմաստութեան հանճարոյ, ըստ որում դասիւ ինն յարմարականաւ զիւրաքանչիւր ոք 'ի նոցանէ կարգեաց:

Id vero idem est ac siquis Gymnasium ingrediens videat globos, et vacuos discos, quae omnia ad usum exercitationis puerorum magister praeparaverit, quae certe speciem aliquam exhibent providentiae artis periti: diceret globos ob levitatem figurae, quippe qui facile mobiles sunt, necessario factos fuisse, ut magis aptos ad exercitationem corporis juventutis; vacuos vero discos ob circulationem, ut nullo negotio jaciantur. Statim enim aliquis in medium accedens, doceret, non suapte natura, sed per artem studiumque experientia firmatum pro utili fine haec facta fuisse. Quamobrem nemo, qui bene sentit, contemplans mundi partes, differentiasque in istis occurrentes, naturalem necessitatem singularum compositioni causam fuisse putet, sed solummodo Principem opificem considerans illum laudibus celebret propter sapientiam intelligentiae, quatenus ordine quodam harmonico singulas earum ordinaverit.

Այլ տարակուսեալ էիր, թէ էրո՞ւմ այսչափ՝ որ ոչ է ըմպելի, ջուր՝ տարածեալ է: Աւելորդ ինչ ոչ գտցես զբնու-

Tu autem haesitabas, quare nimirum tanta vis non potabilis aquae diffusa sit? Superfluam nullam invenias natu-

Թեան մասն, ով Աղեքսանդրէ, եթէ կամեսցիս դու քեզէն զհետ վարել. քանզի 'ի հանդիպող մտաց ոչ ես անբաժ, զոր և 'ի գիտողաց ուսեալ եղեր, զորէն որոումնն որ անցին զճանապարհ իմաստութեան: Զորոց և մեք ուսաք 'ի սովորելոց ունել բանս առ անհաստատսն: Բայց անսպակասաբար իբրու յաղբերէ զիմաստութեանն հանելով՝ լսելեաց որք զգաստացեալ ուսանել՝ 'ի փութոյն սակս ուսանել սոքա, զմեծամեծացն և զմիմեանց բուռն հարելոց իրաց: Ասեն այսորիկ ասեն տարածեալ զծով մարդկային և ա̃ծայինս: Քանզի ա̃ծայինքն վասն այսորիկ զարդարիլ ասեն: Արեգակն՝ զոր ոմանք առաջնորդական ասացին գոլ, վասն որոյ մատուցանէ զպէտս՝ 'ի ծովէ ասեն սնանի. ամենայն որ ինչ միանգամ մաքրագոյն ինչ՝ 'ի խոնաւութենէն յինքն ձգեալ ծծէ: Այս նշանակ է 'ի բազում այլոցն, և վասն զի ընդ յեղանակօքն հակառակ ձգտեալ լինի, որ է սահմանն արեգակնային գնացիցն. ամարանի խեցգետունոյն, և ձմերանի ըստ այծեղջիւրն. քանզի շուրջ գալով արեգակն՝ յաւիտենականն զասացեալ սահմանսն ոչ անցանէ: Այս սնուցող իսկ և անմոլարքն՝ և օդքս սնանին զառ 'ի զօդոյն զմաքրումնն յինքեանս ձգելով խոնաւութիւն. և բազում (յայտ) է այսպէս. զի սակաւ մի նորա ոչինչ ընդ նմա խառնեալ կարգի: Ընդ աշալուշն յաւէտ իմն զովացեալ յերկիր առաքեալ՝ եղեալ ջրագոյն, զոր ցօղ անուանել սովորութիւն է:

Այս որպէս զիարդ մեծ օգուտ յամենայնի երկնի տևութիւն է ծով, այսպէս և առ մարդկան կեանս. քանզի ցամաքայնոց՝ առ որս 'ի կղզիս բնակեալ

rae partem, o Alexander, si velis per te ipsum investigare. Quando quidem diligentis intellectus non es expers, et ab aliis edoctus, ad instar eorum qui perlustrarunt viam sapientiae: quos et nos sequimur, assueti habere verba ad infirmos *(inconstantes)*. Verum inexhausta quodammodo ex fonte sapientiae hauriendo, auditoribus discendi studio ardentibus istis satisfacere procurantes, majora aggressi sunt negotia inter se invicem connexa. Ideo dicunt extensum mare hominum deorumque commodo. Diis enim ita fere adornari dicunt: Sol quem nonnulli rectorem esse dixerunt, eo quod largitur necessaria, ex mari, inquiunt, nutritur; quippe purgatissimas partes humidi elementi ad se trahens sorbet. Pro indicio sit praeter alia, quod per anni tempestates in contrarium tendit cursus solaris, aestate per Cancrum, et hyeme per Capricornum. Nam circumambulans Sol, aeternos illos terminos haud transgreditur. Et ipsae quoque nutrices Fixae (stellae) nutriuntur, ex aëre purgatam ad se trahentes humiditatem: quod ita probant [1]; etenim paululum ipsius humoris nullo modo permixtum constanti lege, sub aurora jugiter frigens in terram remittitur, aquae colore accepto, quod ros nominare mos est.

Sicut autem [2] magnae utilitatis est in totius caeli sustentationem mare, ita quoque ad hominum vitam. Quoniam incolarum terrae cum habitantibus in

1 Cod. primum habuit exaratum, բազում է. *multum est*. Sed postmodum aliena manu reductum in յայտ է, vel յայտնէ. *manifestum est*, aut *manifestat*.

2 Inter Fragmenta Damascena de Mari. edit. Philonis Gr. Lat. Tom. II. pag. 651. haec inseruntur, quae praeferunt sensum solummodo: « Mare admirari operae pretium est, cujus beneficio terrae regiones sibi invicem commutationes bonorum pendunt, atque tum ea quibus carent, accipiunt, tum ea quibus abundant, remittunt ».

